# ՍԱՆԱՍԱՐԵԱՆ

# ՎԱՐԺԱՐԱՆ ԿԱՐՆՈՅ

## Ուսումնական Տեղեկագիր

1891–92 ԵՒ 1892–93 ՏԱՐԻՆԵՐՈՒ

ԵՒ

## Տնտեսական Տեղեկագիր

1892–93 ՏԱՐԻՈՅ

ՄԱՏՈՒՑԵԱԼ

ԱՌ ԱՄԵՆԱՊԱՏԻՒ Ս. ՊԱՏՐԻԱՐՔ ՀԱՅՐ

ՆԱԽԱԳԱՀ

ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԵԱՆ



Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՆԵՐՍԷՍ Ճ. ԱՐԱՄԵԱՆ

1894

# ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ

# ՏԵՂԵԿԱԳԻՐ

## Սանասարեան Վարժարանին Կարնոյ

**1891—92 եւ 1892—93 ՏԱՐԻՆԵՐՈՒ**

ՄԱՏՈՒՑԵԱԼ

ԱՌ ԱՄԵՆԱՊԱՏԻՒ Տ. Տ. ԽՈՐԷՆ Ս. ՊԱՏՐԻԱՐՔ ՀԱՅՐ

ՆԱԽԱԳԱՀ

ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԵԱՆ



Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՆԵՐՍԷՍ Ճ. ԱՐԱՄԵԱՆ

1894

# ՏԵՂԵԿԱԳԻՐ

# Սանասարեան Վարժարանին Կարնոյ

## 1891—92 ՈՒՍՈՒՄՆ. ՏԱՐԻ

*Սանասարեան Վարժարանը՝ երկրիս ուսումնասէր Վեհապետ Օգոստափառ Սուլթան Ապտ-իւլ Համիտ Կայսեր հայրական հովանւոյն ներքեւ տասը տարուան կեանք մը անցնելէ յետոյ՝ 1890 — 91 ուսումնական տարուան վերջը իւր 21 անդրանիկ շրջանաւարտները Ազգին եւ Պետութեան ընծայելով տուաւ այն թանկագին գիտակցութիւնը թէ արդէն նշանաւոր քայլ մը առած է իւր բարեգործական նպատակի իրականացման ճանբուն մէջ, եւ թէ տրամադրելի միջոցներ չեն պակսիր իրեն այսուհետեւ այդ ճանբուն մէջ աւելի հաստատ քայլերով առաջ երթալու։ Այս գիտակցութեամբ լցուած ու քաջալերուած՝ թեւակոխեց նա իւր մետասաներորդ (1891—92) ուսումնական տարին։*

*Ուրիշ բարեբախտութիւն մը սա է որ Հաստատութեանս Տեսչութիւնը միշտ բարւոք յարաբերութեանց մէջ գտնուած է տեղական Կայսերական իշխանութեանց հետ՝ իրեն սկզբունք դրած լինելով միշտ ուղիղ ընթացքի հետեւիլ, եւ ո՛ եւ է խնդիր ունեցած չէ այս շրջանակին մէջ։ Միւս կողմէ տեղական ազգային իշխանութեանց հետ վարժարանի չէնքին նկատմամբ՝ մերթ ընդմերթ ծագած միջադէպն ներկայ շրջանին մէջ միանգամ ընդմիշտ կարգադրուած է՝ տնօրինութեամբ Ազգային Կեդրոնական Վարչութեան։*

Վարժարանս, տեղի անձկութեան պատճառաւ, չորս տարիէ ի վեր դադրած էր նոր աշակերտ ընդունելէ։ Անդրանիկ ընթացաւարտներուն ելնելովը նոր դասարանի տեղ բացուեցաւ, եւ սոյն ուսումնական տարեգլխին վերսկսան նոր ընդունելութիւնք՝ ամիսներ առաջ Տեսչութեան կողմէ յատկապէս տպել տրուած և լրագիրներու մէջ հրատարակուած Յայտագրին համաձայն, որով ամբողջ Ազգին և ի մասնաւորի իրենց զաւակները Վարժարանիս յանձնող ծնողաց ի միամտութիւն ի միջի այլոց կը հաղորդուէր այն մխիթարական տեղեկութիւնը թէ բարեյիշատակ Հիմնադիր-Բարերար Մկրտիչ Սանասարեան իւր թողած կտակով ապահոված է իւր ձեռակերտին ապագան։

Վարժարանիս Ուսմանց ծրագիրը, որ կը համապատասխանէ Գերմանացւոց միջնակարգ վարժարաններուն ծրագրին, ընդունելութեանց վերսկսման առթիւ փոքր ինչ փոփոխութեան ենթարկուեցաւ։ Ասկէ առաջ ուսմանց ընթացքը կը տեւէր ինը տարի, և նոր ընդունուող աշակերտ մը, առանց որ և է նախակրթական պատրաստութիւն ունենալու, կրնար մտնել ամենէն ստորին դասարանը (Առաջինը)։ Տեսչութիւնը շատ կը փափաքէր տարիներու այդ թիւը այսուհետեւ եւս պահել, քանի որ տակաւին այնչափ դժուար է հարկ եղած նախապատրաստութիւնն ունեցող տղայք գտնել երկրին մէջ, և քանի որ տղայի մը համար դպրոցական փոքր հասակի մէջ այսպիսի գիշերօթիկ կրթական հաստատութիւն մը մտնելը շատ մը տեսակէտներով առաւելութիւններ ունի, մանաւանդ երկրին քաղաքակրթութեան այժմեան վիճակին մէջ, սակայն տարիներու փորձառութեամբ տեսնուեցաւ որ Վարժարանիս պահանջած աշակերտական թոշակը, որչափ ալ ուրիշ նմանօրինակ վարժարանաց պահանջածին հետ բաղդատմամբ աննշան, դպրոցական տարիներու երկայն շարքով մը շատ մը ծնողներու համար դժուարակիր կը դառնայ, ուստի Տեսչութիւնը յակամայս պարտաւորեցաւ սոյն տարեգլխէն սկսեալ ուսմանց շրջանը վերածել 7 տարուան կամ 7 դասարանի՝ փակելով նախակրթական երկու առաջին դասարանները, այնպէս որ այսուհետեւ ամենէն ստորին դասարանը, նախապատրաստականը մտնել ուզող նոր աշակերտները լինելու են 11—12 տարեկան և առնուազն ունենալու են այս հմտութիւննե-

րը. Հայերէն վարժ կարդալ, ընթեռնլի կերպիւ գրել, քերականութեան Մասունք բանին գիտնալ, շարադրութիւն մը առանց ուղղագրական խոշոր սխալներու ի գիր առնուլ, և թուաբանութեան չորս գործողութիւնները վարժ կերպիւ կատարել։

Եղած նոր բաժանման համաձայն՝ սոյն տարուան ամենէն ստորին դասարանի (Նախապատրաստականի) ընթացքը կը համապատասխանէ առաջուան Երրորդ դասարանի կամ (մօտաւորապէս) ազգային լաւ նախակրթարանի մը Չորրորդ տարուան ընթացքին. իսկ ամենէն բարձրի (Վեցերորդի) ընթացքը՝ առաջուան Իններորդի ընթացքին։

Վարժարանը այս տարի ունէր Նախապատրաստական, Երրորդ, Չորրորդ, Հինգերորդ և Վեցերորդ դասարանները, որոնց ամեն մէկը ունէր իր մէ՛կ դասերուն և մէ՛կ սերտողութեան յատկացեալ յատուկ սենեակը։ Ինչպէս կը տեսնուի, Վարժարանս տեղի անձկութեան կամ ընդունելութեանց մէջ ասկէ առաջ տեղի ունեցած ընդհատման պատճառաւ չէ կարող իր ուսմանց ծրագրին տրամադրած 7 դպրոցական տարիները, կամ՝ Նախապատրաստական, Առաջին, Երկրորդ, Երրորդ, Չորրորդ, Հինգերորդ, Վեցերորդ դասարանները միևնոյն ժամանակ ունենալ. իր ունեցած 5 դասարաններէն երկուքին միջև ալ 2 տարուան անջրպետ մը կայ, որ առաջիկայ 3 ուսումնական տարիներուն մէջ ևս պիտի շարունակուի, և պիտի ունենայ այն անխուսափելի հետևանքը որ Վարժարանս՝ այն թուականէն սկսեալ, երբ այժմեան Երրորդ դասարանը ընթացաւարտ դառնայ, 2 տարի իրարու վրայ չպիտի կրնայ ընթացաւարտ հանել։

---

Դասախօսութիւնք *սկսան Սեպտեմբերի 23 ին, Տեղեկագրիս վերջը դրուած դասացուցին համաձայն։*

*Նախորդ (1890—91) ուսումնական տարուան վերջը աշակերտաց թիւն էր 122, որոնցմէ պակսեցան 21 ընթացաւարտք և 2 աշակերտք, և մնացին 99 հոգի։ Սոցա վրայ այս տարի աւելցան 22 թոշակաւոր և վեց ձրիավարժ նոր աշակերտներ, որով տարուանս սկիզբը Վարժարանս ունէր, առանց հաշուելու Արհեստանոցի 8*

ձրիավարժ երթեւեկ աշակերտները, 127 աշակերտ, ամենքն ալ գիշերօթիկ. Դոցանէ 102ը թոշակաւոր էին և 25ը ձրիավարժ.

Դասարանները կը պարունակէին հետեւեալ թիւերը.

| ԴԱՍԱՐԱՆ | ՏԱՐՈՒԱՆ ՍԿԻԶԲԸ | | ՊԱԿԱՍԵԱԼ | | ՏԱՐՈՒԱՆ ՎԵՐՋ: | |
|---|---|---|---|---|---|---|
| | Թոշակ. | Ձրիավ. | Թոշակ. | Ձրիավ. | Թոշակ. | Ձրիավ. |
| Նախապատրաստական | 22 | 6 | — | — | 22 | 6 |
| Երրորդ | 26 | 1 | — | — | 26 | 1 |
| Չորրորդ | 20 | 3 | 2 | — | 18 | 3 |
| Հինգերորդ | 19 | 6 | — | — | 19 | 6 |
| Վեցերորդ | 15 | 9 | 1 | — | 14 | 9 |
| | 102 | 25 | 3 | — | 99 | 25 |

Աշակերտաց ծննդեան բնակավայրերը կը ներկայանային հետեւեալ թիւերով.

| | ԹՈՇԱԿ. | ՑՐԻԱՎ. |
|---|---|---|
| Կարին | 22 | 9 |
| Արաբկիր | 10 | 1 |
| Երիզա | 9 | — |
| Տրապիզոն | 8 | 2 |
| Սեբաստիա | 5 | — |
| Խարբերդ | 4 | — |
| Կեսարիա | 4 | — |
| Կիւրին | 4 | — |
| Շ. Գ. Հիսար | 4 | — |
| Սամսոն | 4 | 1 |
| Եօզկատ | 3 | — |
| Կ. Պոլիս | 3 | 1 |

| | ԹՈՇԱԿ. | ՑՐԻԱՎ. |
|---|---|---|
| Տիվրիկ | 3 | — |
| Տիարպէքիր | 2 | 2 |
| Էնկիւրիւ | 2 | 1 |
| Կարս | 2 | — |
| Վան | 2 | 2 |
| Ակն | 1 | — |
| Բաբերդ | 1 | 1 |
| Եւդոկիա | 1 | — |
| Թրիպոլի | 1 | — |
| Կիրասոն | 1 | — |
| Մալաթիա | 1 | — |
| Մարզուան | 1 | — |
| Մալու | 1 | — |
| Չարշամբա | 1 | — |
| Բիլի | 1 | — |
| Օրդու | 1 | — |
| Ալաշկերտ | — | 1 |
| Ամասիա | — | 1 |
| Պանդրմա | — | 1 |
| Նըխաղ (Նիսկիմ) | — | 1 |
| Հալէպ | — | 1 |

Այն տարուան համար երկրին զանազան կողմերէն թոշակաւոր աշակերտաց մասին եղած ծանուցումները կը հասնէին 40 ի, բայց, ինչպէս վերը տեսնուեցաւ, միայն 22 ը եկան։ Չեկողներէն ոմանք զանազան ընտանեկան արգելքներ ունեցած էին, ոմանք ալ, ինչպէս հաւաստի աղբիւրներէ իմացուեցաւ, եւ մնացած էին դրդմամբ անձանց ոմանց, որոնք՝ ով գիտէ ինչ տեսակ հաշիւներէ մղուած՝ վարժարանին մասին այլ ընդ այլոյ գաղափարներ տուեր էին հեռաւոր քաղաքաց մէջ գտնուող միամիտ ծնողներուն եւ չէին խղճար նոցա զաւակները զրկել հիմնաւոր կրթութեան մը բարիքէն։

Կարելի չէ այստեղ ցաւով չյիշել նաեւ ոմանց մէջ տակաւին տիրող այն թիւր գաղափարը թէ՝ երբ այս կամ այն քաղաքի հարուստներուն տղայք Սանասարեան Վարժարան կուղարկուին, այն քաղաքի ազգային դպրոցները նիւթապէս կ'վնասուին։ Այդ գաղափարի տէր անձինք մէկ կողմէ կը մոռնան որ եթէ Սանասարեան Վարժարանը չլինէր, իրենց զաւակաց բարձր կրթութիւն մը տալ փափաքող ունեւոր ծնողք չպիտի բաւականանային ազգային դպրոցով, այլ իրենց տղաքը պիտի յանձնէին Մայրաքաղաքի կամ գաւառի օտար կամ մասնաւոր կրթարաններէն մէկին. միւս կողմէն ալ ողորմելի կարճատեսութեամբ չեն խորհիր թէ ընդհակառակն որչափ կարեւոր է ամեն կերպիւ քաջալերել եւ զօրացնել այսպիսի միջոցներ ունեցող հաստատութիւն մը, որ կոչուած է իւր հանած եւ հանելիք ոչ թէ միայն ձրիավարժ, այլ նաեւ թոշակաւոր ընթացաւարտներուն միջոցաւ բարեկարգ մղում մը տալ ընդհանրապէս մեր դպրոցաց բարւոքման գործին։

Ինչպէս ամեն տարի, այնպէս ալ այս տարի խիստ շատ էին ձրիավարժներու մասին եղած դիմումները, սակայն քանի որ ամեն տարի ձրիավարժներու որոշեալ թիւ մը միայն կարելի է ընդունիլ և հնար չէ ամենքին գոհացում տալ, ընդունուեցան միայն 6 աշակերտ որով վարժարանիս արհեստական եւ ուսումնական ճիւղերու ձրիավարժներուն համագումարը հասաւ 33 ի։

Գոհութեամբ կը յիշենք այստեղ թէ վարժարանիս թոշակաւոր աշակերտներէն Կիւրինցի Տ. Կոչունեանի թոշակը կը վճարէ նորա բարերար Ազն. Գրիգոր էֆ. Թօփալեան Կիւրինցի (այժմ ի Կ. Պօլիս), որ իւր այդ սանը ուսուցիչ պատրաստել կուտայ Կիւրինի ազգային դպրոցին համար, զգալով թէ ազգային կրթութեան բարւոքման ամենակարեւոր միջոցներէն մին՝ լաւ ուսուցիչներ ունենալն է։ Բաղձալի է որ Վարժարանիս մէջ Սան պահելու այս առաջին գեղեցիկ օրինակը մեակը չմնայ, եւ առաջիկային գտնուին ուրիշ ունեւոր, բարեսէր անձինք եւս, որոնք աղքատ, ուշիմ մանուկներ կրթել տան Վարժարանիս մէջ՝ այս կամ այն ազգային դպրոցին համար պատրաստելու նպատակով։ Ասով պիտի բաղդաւորեն ամեն ուսումնական տարեգլխին Վարժարանիս մէջ մուտք հայցող բազմաթիւ ուսումնածարաւ մանուկներէն գոնէ մէկ քանին,

*եւ միեւնոյն ատեն ըրած պիտի լինին ներկայ ժամանակիս մէջ երկրին համար ամենէն աւելի նշանակութիւն ունեցող գեղեցիկ բարեգործութիւններէն մին։*

---

*Տարիներէ ի վեր ժրաջանութեամբ աշխատող Ուսուցչաց դասուն վրայ այս տարի աւելցան անդրանիկ ընթացաւարտներէն 9 հոգի, որոնցմէ մին, իբրեւ թոշակաւոր՝ եւ միւսները իբրեւ ձրիավարժ աշակերտած էին Վարժարանիս։ Թէեւ շատ մը քաղաքներ Տեսչութեան դիմում ընելով ընթացաւարտներէն ուսուցիչ խնդրած էին իրենց ազգային դպրոցներուն համար, սակայն Տեսչութիւնը լաւագոյն սեպեց որ իւր անդրանիկ ձեռնասունները տարի մը եւս մնան Վարժարանիս մէջ եւ իբրեւ օգնական—ուսուցիչներ գործելով յատկապէս պատրաստուին ուսուցչութեան պաշտօնին։ Սրտի գոհունակութեամբ պէտք է յիշել թէ սոյն Տեսչութեան և գլխաւոր ուսուցչաց առաջնորդութեան ներքև փայլուն յաջողութեամբ կատարեցին իրենց այս առաջին փորձը, ինչպէս որ տարեկան քննութեանց միջոցին ալ զգալի եղաւ բոլոր ունկնդիրներուն։*

*Ուսուցիչք եւ իրենց աւանդած շաբաթական դասերն էին.*

## Տ Ե Մ Ո Ւ Ջ Ք

1. **Աբուլեան Գէորգ**, *Դ. ի մէջ 2 դաս Աշխարհագրութիւն, Ե. ի եւ Զ. ի մէջ 2 ական Պատմութիւն եւ 2 ական Աշխարհագրութիւն, 3 կարգի մէջ 3 ժամ Ջութակ. ընդամենը 16 դաս։*

2. **Մասարեան Յովսէփ**, *Ե. ի մէջ 1 Բնապատմութիւն, 2 Տարրաբանութիւն, 2 Բնապատմութիւն եւ 2 Գերմաներէն, Զ. ի մէջ 1 Բնապատմութիւն, 2 Տարրաբանութիւն, 2 Բնաբանութիւն, 3 Գերմաներէն եւ 1 Գծագրութիւն. ընդամենը 16 դաս։*

3. **Սողիկեան Սարգիս**. *Դ. ի մէջ 3 Կրօն եւ 3 Գերմաներէն, Ե. ի մէջ 3 Կրօն, Զ. ի մէջ 2 Կրօն, Ե. ի եւ Զ. ի մէջ (միացեալ) 1 Երգ, 2 կարգի մէջ 2 ական Դաշնակ. ընդամենը 16 դաս։*

## ԳԼԽԱՒՈՐ ՈՒՍՈՒՑԻՉՔ

1. Խաչատրեան Աստուածատուր, Դ.ի մէջ 2 Պատմութիւն՝ Ե.ի մէջ 2 Հայերէն Աշխարհաբար և 2 Հայերէն Գրաբար, 2 Հայերէն Աշխարհաբար, 2 Հայերէն Գրաբար եւ 2 Եկեղ. Պատմութիւն. ընդամենը 13 դաս։

2. Մկրտչեան Կորիւն, Ն. Պատր.ի մէջ 6 Հայերէն Աշխարհաբար և 2 Պատմութիւն, Գ.ի մէջ 3 Հայերէն Աշխարհաբար եւ 3 Հայերէն Գրաբար, Դ.ի մէջ 2 Հայերէն Գրաբար և 3 Հայերէն Աշխարհաբար. ընդամենը 19 դաս։

3. Շիւֆրի Մէհէմմէտ Էֆ. Գ.ի մէջ 3 Տաճկերէն, Դ.ի, Ե.ի և Զ.ի մէջ 4ական Տաճկերէն. ընդամենը 15 դաս։

4. Ումիկեան Դաւիթ, Գ.ի մէջ 4 Թուաբանութիւն, Դ.ի մէջ 2 Թուաբանութիւն, 2 Դրահաշիւ և 2 Երկրաչափութիւն, Ե.ի և Զ.ի մէջ մէկ մէկ Թուաբանութիւն, 2ական Դրահաշիւ և 2ական Երկրաչափութիւն. ընդամենը 20 դաս։

5. Վիգուրէօ Ռիշար, Գ.ի և Դ.ի մէջ 3ական Գաղղիերէն, Ե.ի մէջ 5 Գաղղիերէն, Զ.ի մէջ 4 Գաղղիերէն. ընդամենը 15 դաս։

## ՕԳՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՑԻՉՔ

1. Աւետիսեան Երանոս, Ն. Պատր.ի և Գ.ի մէջ 2ական Մարմնամարզ, Դ.ի, Ե.ի և Զ.ի մէջ մէկ մէկ Մարմնամարզ. ընդամենը 7 դաս։

2. Բռուտեան Տիգրան, Ն. Պատր.ի մէջ 4 դաս Տաճկերէն։

3. Գէորգեան Տիգրան, Գ.ի մէջ 3 Կրօն եւ 2 Պատմութիւն. ընդամենը 5 դաս։

4. Գրիգորեան Յակոբ, Ն. Պատր.ի մէջ 6 Թուաբանութիւն, Գ.ի և Դ.ի մէջ 2ական Երգ. ընդամենը 10 դաս։

5. Զոյինեան Գրիգոր, Ն. Պատր.ի մէջ 2 Երգ, 2 Գեղագրութիւն և 2 Գծագրութիւն, Գ.ի և Դ.ի մէջ մէկ մէկ Գեղագրութիւն, 1 կարգի մէջ 2 Ջութակ. ընդամենը 10 դաս։

6. Շէհլէմեան Գրիգոր, Ն. Պատր.ի մէջ 2 դաս Աշխարհագրութիւն։

7. Ջիգէրջեան Գէորգ, Դ.ի մէջ 2 Գաղղիերէն, Դ.ի մէջ 1 Գաղղիերէն և 2 Բնապատմութիւն. ընդամենը 5 դաս։

8. Սարգիսեան Յարութիւն, Դ.ի մէջ 2 Բնապատմութիւն, 2 Աշխարհագրութիւն և 2 Գծագրութիւն, Դ.ի և Ե.ի մէջ մէկ մէկ Գծագրութիւն. ընդամենը 8 դաս։

9.. Տէր Սերոբեան Գաբրիէլ, Դ.ի մէջ 2 դաս Տաճկերէն։

10. Տիրացուրեան Յարութիւն, Ն. Պատր.ի մէջ 3 կրօն և 2 Բնապատմութիւն. ընդամենը 5 դաս։

## ԱՐՀԵՍՏԱՒՈՐ ՈՒՍՈՒՑԻՉՔ

1. Սէյլանեան Սուքիաս, *Արհեստապետ Հիւսնութեան, և*

2. Ստեփանեան Յակոբ, *Արհեստապետ Կօշկարարութեան, որք 2ական ժամ կառաջնորդէին Վարժարանի ուսումնական ճիւղի աշակերտներէն արհեստ սորվող կարգերուն, և գրեթէ ամբողջ օրը միմիայն արհեստ սորվող աշակերտներուն։*

*Ուսուցիչք կանոնաւորապէս յաճախեցին իրենց դասերուն. բոլոր բացակայութիւնք կերեւնան հետեւեալ ցուցակէն, և տեղի ունեցած են բանաւոր պատճառներով։*

1. Յ. Մասաքեան *պակսած է 134 դաս, 3ը պաշտօնական այցելութեան և միւսները ծանր ժանտատենդի պատճառաւ։*

2. Ռ. Վիգուրէօ *պակսած է 24 դաս, 16ը հիւանդութեան, 6ը տօներու և 2ը անձնական գործի պատճառաւ։*

3. Մ. Շիւֆրի Էֆ. *պակսած է 22 դաս, 16ը անձնական գործի, 3ը Պայրամի և 3ը հիւանդութեան պատճառաւ։*

| | | | |
|---|---|---|---|
| 4. Ս. Խաչատրեան | 20 | *հիւանդութեան* | *պատճառաւ։* |
| 5. Յ. Ստեփանեան | 12 | » | » |
| 6. Յ. Սարգիսեան | 6 | » | » |
| 7. Յ. Ոսկիկեան | 5 | » | » |

*Ուսումնական տարուան վերջը Վարժարանիս մէջ իրենց ունեցած պաշտօններէն ազատ կացուցուեցան Ընթացաւարտ-Օգնական ուսուցիչք՝* 1) *Աւետիսեան Ե.*, 2) *Գէորգեան Տ.*, 3) *Գրիգորեան Յ.*,

4) Սարգիսեան Յ., և 5) Տէր Սերոբեան Գ.,) որոնք այսուհետեւ եւս ուսուցչական պաշտօն պիտի վարեն իրենց հայրենիքներուն մէջ կամ այլուր։

Ինչպէս յայտնի է, գլխաւոր ուսուցիչներէն՝ երեքին Տեսուչք իրենց մասնագիտական ուսմանց ընթացքը Հիմնադիր-Բարերարի ծախիւք կատարած են Գերմանական Համալսարանաց մէջ. եւ յատկապէս Ենայի Համալսարանին Մանկավարժական Սեմինարին մէջ ականաւոր Մանկավարժ Կ. Ֆ. Ռայնի առաջնորդութեան ներքոյ պատրաստուած են ուսուցչական կոչման։ Գ. Ումիկեան եւս՝ իբրեւ Բարերարի սան՝ յատկապէս մաթեմաթիկական գիտութեանց ուսուցչութեան համար պատրաստուած է Գ. Բուրգի Բազմարուեստանոցին մէջ։ Ա. Խաչատրեան եւ Կ. Մկրտչեան Ս. Էջմիածնի Ճեմարանին ընթացաւարտներէն են։ Մնացեալ ուսուցիչք եւս իրենց ուսումը առած են Բարձրագոյն կամ Միջնակարգ օտար եւ ազգային վարժարանաց մէջ։ Արուեստապետ-Ուսուցիչք ելած են Տփղիսի Արհեստագիտական վարժարանէն։

Մանկավարժական սկզբանց ճշգիւ հետեւող վարժարաններու սովորութեան համաձայն՝ Վարժարանիս մէջ եւս ուսուցիչք, իրենց առարկաներուն մէջ ունեցած բոլոր հմտութեամբն հանդերձ, ամեն մէկ դաս կանխաւ լրջօրէն կը պատրաստեն եւ գրաւորապէս կը մշակեն, որով միայն ուսուցումը կստանայ որոշ սահման ու նըպատակ եւ զերծ կը մնայ անպատրաստ դասերու յատուկ եղող տարտամութենէն ու անորոշութենէն։

Ուսուցիչք՝ իբրեւ վարժարանիս սեպհական պաշտօնեայներ՝ նորան կը նուիրեն իրենց ուսուցչական ջանքը։ Տեսչութեան անդամներէն 2ը միշտ կը բնակին վարժարանին մէջ։ Միւս ուսուցիչներէն միայն ընթացաւարտք այնտեղ կը բնակէին այս տարի։

Պարտաւորիչ ուսումները *իւրաքանչիւր դասարանի վրայ բաժանուած էին հետեւեալ կերպիւ.*

| ԴԱՍԱՐԱՆ | Կրօն | Եկեղ. Պատմութիւն | Հայերէն Աշխարհաբար | Հայերէն Գրաբար | Տաճկերէն | Գաղղիերէն | Գերմաներէն | Պատմութիւն | Աշխարհագրութիւն | Բնապատմութիւն | Բնաբանութիւն | Տարրաբանութիւն | Թուաբ. եւ Տօմարակ. | Գրահաշիւ | Երկրաչափութիւն | Գեղագրութիւն | Գծագրութիւն | Երգ | Մարմնամարզ | Գումար |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ն. Պ. | 3 | — | 6 | — | 4 | — | — | 2 | 2 | 2 | — | — | 6 | — | — | 2 | 2 | 2 | 2 | 33 |
| Գ. | 3 | — | 3 | 3 | 5 | 5 | — | 2 | 2 | 2 | — | — | 4 | — | — | 1 | 2 | 2 | 2 | 36 |
| Դ. | 3 | — | 2 | 3 | 4 | 4 | 3 | 2 | 2 | 2 | — | — | 2 | 2 | 2 | 1 | 1 | 2 | 1 | 36 |
| Ե. | 3 | — | 2 | 3 | 4 | 5 | 2 | 2 | 2 | 1 | 2 | 2 | 1 | 2 | 2 | — | 1 | 1 (*) | 1 | 36 |
| Զ. | 2 | 2 | 2 | 2 | 4 | 4 | 3 | 2 | 2 | 1 | 2 | 2 | 1 | 2 | 2 | — | 1 | 1 (*) | 1 | 36 |
| Գումար | 14 | 2 | 15 | 11 | 21 | 18 | 8 | 10 | 10 | 8 | 4 | 4 | 14 | 6 | 6 | 4 | 7 | 8 | 7 | 177 |

*Միացմամբ կը նուազին* . 2

*Կը մնան շաբաթական* 175 *դաս*

Կամաւոր ուսումներն *էին Անգղիերէն, Դաշնակ, Ջութակ և Արհեստներ։*

Անգղիերէնը *այս տարի չկրցաւ աւանդուիլ, որովհետև զայն սորվիլ փափաքողք դասարան մը կազմելու համար հարկ եղած թիւը չէին ներկայացներ*

*Ինչպէս որ վարժարանիս յայտագիրը կը արտադրէ, աշակերտ մը կամաւոր ուսումներէն միայն որ եւէ մէկը կրնայ առնել. ըստ այսմ՝ աշակերտք իրենց ընդունակութեան ու բաղձանքին հա-*

(*) *Նշանակէ թէ Ե. եւ Զ. դասարանները* 2 *դասի մէջ միացած էին։*

մաձայն ընտրած էին կամ Արհեստի (Կողպարարութեան ու Հիւսնութեան) եւ կամ Գործիական Երաժշտութեան (Դաշնակի ու Ջութակի) ճիւղերէն մին։

**Դաշնակածուք եւ Ջութակածուք** իրենց կարողութեան աստիճանին համեմատ բաժնուած էին զանազան կարգերու, որոնց իւրաքանչիւրը կստանար շաբաթը 2ական ժամ դաս, և կը կատարէր օրը մէկ մէկ ժամ կրթութիւն՝ ազատ և կամ պարապմունքի յատկացեալ ժամերուն մէջ։

Դաշնակի դասընթացին կը հետեւէին 10 աշակերտ, 9ը թոշակաւոր և 1ը ձրիավարժ, և կը կազմէին 2 կարգ։ Իրենց գործածութեան յատկացեալ էին 5 դաշնակ։

Ջութակի դասընթացին կը հետեւէին 44 աշակերտ, 30ը թոշակաւոր և 14ը ձրիավարժ, և կը կազմէին 4 կարգ։ Իւրաքանչիւր ջութակածու ունէր իւր յատուկ ջութակը։

Վարժարանի ուսումնական բաժնի աշակերտներէն Արհեստից Կողպարարութեան ճիւղին կը հետեւէին 15 աշակերտ, 14ը թոշակաւոր եւ 1ը ձրիավարժ, իսկ հիւսնութեան ճիւղին՝ 17 աշակերտ, 16ը թոշակաւոր և 1ը ձրիավարժ։ Այդ երկու ճիւղերու աշակերտք 2 կարգի բաժնուելով օրը մէկ մէկ ժամ և երբեմն քիչ մը աւելի կաշխատէին Արհեստապետ-Ուսուցչաց առաջնորդութեան ներքոյ։

Որովհետեւ դեղարուեստի, արհեստի և այլ նմանօրինակ մասնաւոր պարապմունքները ոչ թէ միայն գործնական նշանակութիւն ունին, այլ նաեւ ուսումնական պարապմանց մէջ իրենց յառաջ բերած փոփոխութեամբ տեսակ մը թարմութիւն եւ կազդուրում կուտան աշակերտին, Տեսչութիւնը կարգադրած է որ նուագածութեան եւ կամ արհեստի չմասնակցող աշակերտք գոնէ կազմարարութեամբ պարապին։ Այս տարի կային 15ի չափ կազմարարներ, որոնք 2 կարգի բաժնուելով, ձմրան գիշերները մէկ մէկ ժամ կաշխատէին վարժարանի գործատան մէջ։

Աշակերտներէն շատերը ամառը ազատ ժամերու մէջ կաշխատէին վարժարանի պարտէզներուն մէջ։

---

Աշակերտաց գործածութեան յատկացեալ ձեռնարկ-ներն էին.

Կրօն. «Բաղուածներ-Գրաւոր.» Ս. Գիրք.

Հայերէն. Տ. Ղեւոնդեան, Մայրենի լեզու, Դ. տարի.
Գարագաշեան, Գործնական Քերականութիւն.
Յովհաննեան, Ծաղիկ Ս. Գրոց.
Պիպէրճեան, Ճաշակ արդի հայ մատենագրութեան.
Թոռնեան, Հատընտիր ընթերցուածք.
Զայըխեան Այտընեան, Քերականութիւն Հայ. լեզուի

Տաճկերէն. Արիկեան, Իքսիր էլիֆպայի Օսմանի [Եղնիկ
» Սարֆը Օսմանի
» Իլավէլի Կիւլդէսթէ
Ֆէյզի, Ուսուլը Ֆարիսի
Սաատի, Կիւլիսդան

Գաղղիերէն. Belèze, Livre de lecture
Terzian, Livre d'or de l'enfance
F. P. B., Exercices orthographiques
F. J. C., Grammaire française
Feugère, Morceaux choisis
Ufer, Französisehes Lesebuch
P... Methode analytique de style
Godefroy, Morceaux choisis

Գերմաներէն. Օթթօ, Տարերք Քերականութեան
» Ծաղկաքաղ ընթերցուածք
Platte et Bayard, Cours gradué

Պատմութիւն. Willmann, Lesebuch aus Herodot
» Lesebuch aus Homer
Loos, Lesebuch aus Livius
Dielitz, Grundriss der Weltgeschichte
Թէվֆիկ, Թարիխի Օսմանի

Աշխարհագրութիւն. Matzat, Erdkunde
Seydlitz, Schulgeographie
Hummel, Schulatlas
Kiepert, Kleiner Schulatlas

Բնապատմութիւն. Kiessling et Pfalz, Wiederholungsbuch der Naturgeschichte
Traumueller Naturhist. Schulatlas
Բնաբանութիւն. Dorner, Leitfaden der Physik
Թուաբանութիւն. Hentschel, Aufgaben zum Zifferrechnen
Löwe, Kaufmännisches Rechnen
Գրահաշիւ. Foedter, Anfangsgründe der Algebra
Երկրաչափութիւն. Mehler, Elementarmathematik
Schloemilch, Logarithmen
Երգ. Sering, Auswahl von Gesaengen
Դաշնակ. Hennes, 250 Melod. Uebungstücke
Clementi-Hennes, Sonatinen
Kuhlau-Hennes, Sonatinen
Bertini-Hennes, Etuden
Ջութակ. Mettnev, Violinschule
Weiss, Blumenlese
Sehroeder, Blumenlese
Mazas, Duette

*Գերմաներէն լեզուի ուսման վերաբերեալ գրքերէն զատ՝ այս կամ այն ուսման համար նշանակուած* Գերմաներէն դասագրքերէն *շատերը ուսուցչաց կողմէ Հայերէնի փոխադրուած են և առ այժմ ձեռագիր օրինակներով կը գործածուին։ Այդ գրքերուն մէկ մասը կը պատկանի Գերմանացւոց* Հերբերտեան *կոչուած մանկավարժական նորագոյն, ընտիր գրութեան, որուն Վարժարանս կաշխատի կարելի եղածին չափ հետեւիլ։*

---

Առաջին կիսամեակի քննութիւնք, *որոնք ներքին էին, տեւեցին Փետրվար 18 էն մինչև 22, ընդ ամենը 5 օր։ Անոնք տեղի կունենային միևնոյն ժամանակ երեք տարբեր դասարաններու մէջ, և սկսելով առաւօտեան ժամը 8* $^{1}/_{4}$*ին ըստ Եւրոպացւոց՝ կը տևէին մինչև 11* $^{3}/_{4}$։

Տարեկան քննութիւնք *տեւեցին Յունիս 22 էն մինչև Յուլիս 11, ընդ ամենը 17 օր։ Առաջին 11 օրերը տեղի կունենային դա-*

սարաններուն մէջ և կէս հրապարակային էին, այսինքն միայն աշակերտաց ծնողք, պաշտօնական մարմինք և յատկապէս հրաւիրուած այլ անձինք ներկայ կը գտնուէին։ Իսկ վերջի օրերը տեղի կունենային Նոր Շէնքի ընդարձակ սրահին մէջ և բոլորովին հրապարակային էին։

Ընթացաւարտից գրաւոր քննութիւնք, որոնց նիւթերն էին Աշխարհաբար և Գրաբար Հայերէն, Տաճկերէն, Գաղղիերէն և Ուսողութիւն, կատարուեցան առաջին 2 օրերուն մէջ՝ կէս օրէն առաջ ժամը 7—12 և կէս օրէն յետոյ $1\frac{1}{2}$—5։ Ուսուցիչը ամեն անգամ քննութեան սկիզբը բոլոր ուսուցչաց ներկայութեամբ դասարանին կուտար քանի մը նիւթ կամ խնդիր, եւ ամեն աշակերտ անոնցմէ որ և է մին ընտրելով առանց ուսուցչի կամ ընկերոջ օգնութեան կը շարադրէր կամ կը լուծէր։ Յատուկ ուսուցիչ մը իբրև հսկող շարունակ ներկայ կը գտնուէր դասարանին մէջ։ Շարադրութիւններէն շատերը յետոյ հրապարակային քննութեանց ժամանակ կարդացուեցան և արժանացան ունկնդիրներու գնահատման։

Միւս քննութիւնք՝ պատրաստուած Կարգացոյցին համաձայն՝ տեղի կ'ունենային կէսօրէն առաջ, եւ առաւօտեան ժամը $7\frac{1}{4}$ին սկսելով՝ կէս-հրապարակային մասին մէջ երբեմն կը տեւէին մինչև ժամը 10—12, իսկ բոլորովին հրապարակային մասին մէջ՝ մինչև $11\frac{1}{4}$։ Ուսմանց ոմանց համար նշանակուած էր $1\frac{1}{4}$, եւ ոմանց համար 1 ժամ։ Կէս հրապարակային մասին մէջ քննութիւնք կը լինէին երբեմն միայն մէկ եւ երբեմն միեւնոյն ժամանակ երկու տարբեր դասարաններու մէջ, իսկ բոլորովին հրապարակային մասին մէջ ամեն օր երեքական առարկայ կ'առնուէին իրարու ետեւէ։

Վարժարանիս տարեկան քննութեանց օրերը տօնական օրեր դարձած են քաղաքիս համար. ինչպէս ամեն տարի, այս տարի եւս ուսումնասէր անձինք ժամերով ներկայ կը գտնուէին քննութեանց գրեթէ ամեն օր։ Գեր. Պատր. Փոխանորդ Տ. Ղեւոնդ Արքեպս. Շիշմանեան, որ Ս. Էջմիածին գնացած լինելով միայն վերջին օրերուն հասաւ, շատ մը քննութեանց ներկայ գտնուելով խրախուսեց

աշակերտները։ Գաւառիս կրթական ժողովը (Մէարիֆ) եւս իր ներկայութեամբ պատուեց ընթացաւարտներուն Տաճկերէնի քննութիւնը։ Այսպէս, Սանասարեան Վարժարանին մէջ մեծ կարեւորութիւն կը տրուի Օսմանեան լեզուին կատարեալ ուսուցման, զոր տարուէ տարի աւելի արդիւնաւոր ընծայելու ջանադիր է Տեսչութիւնը։

Այս անգամ զանց առնուեցաւ ամավերջի սովորական հանդէսը։ Քննութեանց վերջին առարկայէն՝ այն է ընթացաւարտից կրօնէն յետոյ, որուն նիւթն էր Քրիստոնէական անդրանիկ Եկեղեցւոյն կազմութիւնն ու կեանքը եւ Առաքելոց գործունէութիւնը, կրօնուսոյցը պարագային յարմար վերջաբան մը ընելով Տեսչութեան եւ ուսուցչաց կողմէ հրաժեշտ տուեց ընթացաւարտներուն։ Այն խորհրդաւոր րոպէին, երբ կրթական տունս երկրորդ անգամ լինելով ընթացաւարտներու խումբ մը կ'ընծայէր Ազգին եւ Տէրութեան, ամէն ոք յուզեալ էր եւ ամէն բերան կ'օրհնէր Մեծ Բարերարի յիշատակը՝ բարեմաղթութիւններ ընելով վասն բարօրութեան եւ արեւշատութեան Օգոստափառ Ինքնակալին Սուլթան Ապտ-իւլ Համիտ Կայսեր։

Յաջորդ օրը (Կիւրակէ), կրօնային սրտաշարժ հանդէսով մը եւս նուիրագործուեցաւ ուսումնական տարւան փակումը։ Ընթացաւարտք՝ իրենց անդրանիկ ընկերներուն պէս՝ ուզելով Վարժարանէս չը մեկնած երախտագիտական յատուկ յարգանք մը մատուցանել իրենց Բարերարի յիշատակին՝ նորա համար Հոգեհանգստեան պաշտօն կատարել տուին Եկեղեցւոյն մէջ առաւօտեան Ս. Պատարագէն յետոյ։ Հանդիսադիր Պատ. Փոխանորդ Սրբազանն արարողութենէն յետոյ դառնալով ընթացաւարտներուն, որոնք ատեանին մէջտեղը խաչով, աւետարանով եւ մոմերով զարդարուած սեւապատ սեղանին երկու կողմը շարուած էին իրենց ուսուցչաց հետ միասին, հայրական ազդու խօսքերով խրատեց զնոսա որ իրենց այսուհետեւ անցընելիք կեանքին մէջ հաւատարիմ մնան իրենց ստացած դաստիարակութեան ոգւոյն եւ սկզբանց, և օրհնեց զիրենք, Հիմնադիրն ու Վարժարանը, ու ներբողեց Օգոստափառ Կայսեր կրթասէր հոգածութիւնը, ջերմ բարեմաղթութիւններ ընելով։

---

Աշակերտներն ամէնքն ալ փոխեցին իրենց դասարանները, բայց Չորրորդ դասարանի մէկ աշակերտէն, որուն համար որոշուեցաւ որ տարի մը ալ մնայ նոյն դասարանին մէջ։ Դասարան փոխողներուն մէջ ալ կային քանի մը աշակերտ, որոնք աւելի դիւրութեամբ պիտի հետեւէին ուսմանց ընթացքին, եթէ տարի մը ալ կրկնէին. սակայն Տեսչութիւնը՝ այն յուսով թէ նոքա իրենց ջանքով եւ ուսուցչաց ու կրկնչաց մանաւանդ ուշադրութեամբ պիտի յաջողին առաջիկայ տարի համընթաց լինել իրենց ընկերներուն, առ այժմ ետ կեցաւ հարկ եղած խստութենէն։

---

Իրենց ուսմանց ընթացքը յաջողութեամբ կատարելով Աւարտման վկայական ստացան հետեւեալ 23 աշակերտք, որոնցմէ 14ը թոշակաւոր եւ 9ը ձրիավարժ։

| | | | |
|---|---|---|---|
| 1. | Ազգարեան Յովհաննէս | Տրապիզոնցի, | Ձրիավարժ |
| 2. | Ալպապայեան Սիմոն | Կարնեցի, | » |
| 3. | Աստուրեան Նիկողոս | Հալէպցի, | » |
| 4. | Աստմեան Զաքար | Կիւքիւնցի, | » |
| 5. | Տէրպէտէրեան Մարտիրոս | Արաբկերցի, | Թոշակաւոր |
| 6. | Տէրպէտէրեան Յովհաննէս | » | » |
| 7. | Եկաւեան Կարապետ | Կարնեցի, | » |
| 8. | Թիւթիւնճեան Յարութիւն | Ամասիացի, | Ձրիավարժ |
| 9. | Խաչատուրեան Յակոբ | Տիգրանակերտցի, | » |
| 10. | Քոնդակճեան Արմենակ | Կարնեցի, | Թոշակաւոր |
| 11. | Ճանճիկեան Պետրոս | Արաբկերցի, | » |
| 12. | Մալխասեան Պօղոս | Տրապիզոնցի, | » |
| 13. | Մանկրուրդեան Սեդրաք | » | Ձրիավարժ |
| 14. | Յովսէփեան Արշաւիր | Կարնեցի, | Թոշակաւոր |
| 15. | Շէկոյեան Գրիգոր | » | Ձրիավարժ |
| 16. | Զպլակեան Տիգրան | Կիրասոնցի, | Թոշակաւոր |
| 17. | Վարդապետեան Պետրոս | Երզնկացի, | » |
| 18. | Տէր-Ազարեան Սողոմոն | Կարնեցի, | » |
| 19. | Տէր-Միքայէլեան Գրիգոր | Արաբկերցի, | Ձրիավարժ |

| | | | |
|---|---|---|---|
| 20. | Տիրացուեան Վահան | Կարնեցի, | Թոշակաւոր |
| 21. | Փաշաճեան Երուանդ | Տրապիզոնցի, | » |
| 22. | Ցէյթվաճեան Արամ | » | » |
| 23. | Ցէյթվաճեան Գրիգոր | » | » |

Սոյն տարուան (1891-92) ձրիավարժ ընթացաւարտներէն Սիմոն Աղապալեան Կարնեցի, եւ անդրանիկ (1890-91) ձրիավարժ ընթացաւարտներէն Գէորգ Ծիկէրճեան Արաբկերցի, Ուսուցչական ժողովի կողմէ միաձայնութեամբ ընտրուեցան, որպէս զի տարի մը եւս Վարժարանիս մէջ մնալով մասնաւորապէս պատրաստուին Գերմաներէնի եւ Ուսողութեան մէջ եւ 1893ի Սեպտեմբերին Վարժարանի ծախքով ուղարկուին Աւստրիոյ Ռայխընպէրկ քաղաքի Արհեստագիտական բարձրագոյն վարժարանը։ Գէորգ Ծիկէրճեան պիտի հետեւի նոյն Վարժարանի քիմիական բաժնին, իսկ Սիմոն Աղապալեան՝ մեքենականին, երկուքն եւս իրենց ընթացքը աւարտելէ յետոյ ուսուցչական պաշտօն պիտի վարեն Վարժարանիս մէջ։

Սոյն տարուան միւս 8 Ձրիավարժ ընթացաւարտներէն Ց. Թիւթիւնճեան պահուեցաւ Վարժարանիս մէջ իբրեւ Օգնական-Ուսուցիչ. Մնացեալ 7ն, անդրանիկ ձրիավարժ-ընթացաւարտներուն պէս, իրենց բարոյական պարտաւորութեան համաձայն ուսուցչութիւն պիտի ընեն իրենց ծննդավայրին մէջ կամ այլուր։

---

Ընթացաւարտից թիւը ամբողջովին ներկայացնելու համար հարկ կը համարինք այս տեղ աւելցնել նաեւ Անդրանիկ ընթացաւարտներու ցուցակը՝ տեղագրութեան մասին նկատողութեան առնելով ծնողաց բնակավայրերը։

| | | | |
|---|---|---|---|
| 1. | Աւետիսեան Երանոս | Բասենցի, | Ձրիավարժ |
| 2. | Գէորգեան Տիգրան | Խնուսցի, | » |
| 3. | Գրիգորեան Յակոբ | Խարբերդցի, | » |
| 4. | Խզրիկեան Շերամ | Մշեցի, | » |
| 5. | Խերպէկեան Կարապետ | Կարնեցի, | Թոշակաւոր |
| 6. | Քոլանճեան Պետրոս | » | » |

| | | | |
|---|---|---|---|
| 7. | Համէսեան Յովհաննէս | Կարնեցի | Թոշակաւոր |
| 8. | Համէսեան Սեդրաք | » | » |
| 9. | Ղոյինեան Գրիգոր | Դերջանցի, | Ձրիավարժ |
| 10. | Մելքոնեան Յակոբ | Վանեցի, | » |
| 11. | Շամլեան Խաչիկ | Էնկիւրիւցի, | Թոշակաւոր |
| 12. | Շէհրէմեան Գրիգոր | Բաբերդցի, | Ձրիավարժ |
| 13. | Պոռուկեան Մովսէս | Կիւրինցի, | » |
| 14. | Ծիկէրճեան Գէորգ | Աշաբկերցի, | » |
| 15. | Սարգսեան Յարութիւն | Խարբերդցի, | Ձրիավարժ |
| 16. | Տէր Սերոբեան Գաբրիէլ | Բաբերդցի, | Թոշակաւոր |
| 17. | Տիրատուրեան Յարութիւն | Ակնցի, | Ձրիավարժ |
| 18. | Տիրացուեան Մուշեղ | Կարնեցի, | Թոշակաւոր |
| 19. | Փաշաճեան Արշամ | Տրապիզոնցի, | » |
| 20. | Փաստրմաճեան Գարեգին | Կարնեցի, | » |
| 21. | Քէօսէեան Երուանդ | » | » |

Սոյնպէս Շ. Խղրիկեան, Մ. Պոռուկեան եւ Յ. Մելքոնեան իրենց վարժարանական վերջին 3 տարիներուն մէջ ուսումնական ճիւղին միայն քանի մը ուսմանց հետեւելով՝ առաւելապէս կ'զբաղէին Արհեստանոցի Կազմարարութեան բաժնին մէջ։ Ըստ այսմ երեքն ալ այդ արհեստին մէջ ստացան՝ Վարժարանի Օգնականի վկայական։

Յ. Համէսեան եւ Ս. Համէսեան իրենց ծնողաց ծախիւք այս տարի գնացին Գերմանիոյ Մայրաքաղաքը՝ Պէրլին, ուր իրենցմէ առաջինը պիտի յաճախէ Համալսարանի Բժշկական բաժինը եւ երկրորդը՝ Բազմարուեստանոցի Քիմիական բաժինը։ Այսպէս Վարժարանս, առաջին անգամ լինելով, բաղդ կունենայ իր ընծայած աշակերտներէն 2ը Ակադեմական ուսմանց շարքին մէջ տեսնելու, եւ կը սիրէ յուսալ թէ այսուհետեւ ալ պիտի գտնուին ուրիշ անձեր ծնողաց զաւակունք, որք իրենց ընթացքը Վարժարանիս մէջ աւարտելէ յետոյ կատարելագործուելու համար պիտի դիմեն Գերմանական բարձրագոյն կրթութեան կեդրոնները։

---

**Վարժարանիս Արհեստանոցը**, *ինչպէս յայտնի է, ունի երկու տեսակ աշակերտ, մին կը կազմեն նոքա որք Վարժարանիս ուսումնական ճիւղին կանոնաւորապէս հետեւելով՝ արհեստ մը կընտրեն իբրեւ կամաւոր ուսում, եւ օրը սովորաբար միայն մէկ ժամ կը նուիրեն անոր։ Միւս տեսակին կը վերաբերին բուն արհեստաւոր աշակերտները, որք միմիայն արհեստ կը սորվին։ Այս վերջիններէն Արամ Տ. Ն. Վահանեան եւ Մկրտիչ Գիլէեան, երկուքն ալ Կարնեցի, որոնք յառաջագոյն աշակերտած էին տեղւոյս Ազգային դպրոցին, եւ չորս տարիէ ի վեր իբրեւ երկթեւեակ աշակերտ կը յաճախէին Վարժարանիս արհեստանոցը, այս տարի աւարտեցին իրենց ընթացքը։ Ա. Վահանեան՝ հիւսնութեան մէջ եւ Մ. Գիլէեան կազմարարութեան մէջ առաջին Վարպետի-Օգնականի վկայական։*

*Նախորդ տարուան ընթացաւարտ Մ. Պետիկեան տարուան սկիզբէն կազմարարութեան Արհեստապետին օգնական կարգուած էր, սակայն արդէն Նոյեմբեր ամսին հրաժարեցաւ իւր պաշտօնէն։*

*Նախորդ տարուան ընթացաւարտ* Յ. Մելքոնեան *եւ այն տարուան ընթացաւարտ Ա.* Վահանեան *Վարժարանի ծախքով ուղարկուեցան Տփղիսի Արհեստագիտական Վարժարանը, ուր Վարժարանիս Կառավարիչներէն Ազնուաշուք Գ. Յ. Եւանգուլեանի խնամատարութեան եւ հոգողութեան ներքեւ տարի մը կամ աւելի ժամանակ մնալէ յետոյ պիտի երթան աւելի բարձր Արհեստագիտական վարժարան մը։ Յ. Մելքոնեան պիտի կատարելագործէ երկաթագործութեան, կառաշինութեան, կազմանկարութեան եւ երկաթի ներկարարութեան արհեստները. իսկ Ա. Վահանեան՝ հիւսնութեան, կառաշինութեան եւ փայտի ներկարարութեան արհեստները։ Երկուքն ալ՝ իրենց կողմէ Վարժարանիս Տեսչութեան տրուած պայմանագրին համաձայն՝ պարտաւորութիւն ստանձնած են իրենց ընթացքն աւարտելէ յետոյ, Վարժարանիս մէջ արհեստի ուսուցչութեան պաշտօն կատարել։*

**Արհեստանոցի բոլոր աշակերտք** *առաջնորդութեամբ երկու Արհեստապետաց, որք տարուան սկիզբէն յաջորդեցին իրենց նախորդներուն՝ Յ. Տ. Պօղոսեանին եւ Ա. Խաչախանեանին, կատարեցին զանազան աշխատանքներ, այն է՝ փոքր ու մեծ սեղաններ, աթոռակներ, դարաններ, երկաթեայ աշտանակներ, կղպանքներ,*

մամուլներ, բանալիներ, ունելիներ, եւ փայտի ու երկաթի ճախարակներու վրայ քաշուած ուրիշ շատ մը ձեւեր, որոնք տարեկան քննութեանց վերջին օրը Արհեստանոցին մէջ ի տես դրուած լինելով՝ իրենց շէնքի նրբութեամբ եւ գեղեցկութեամբ արժանացան ամենքի հիացման ։

---

**Աշակերտաց վարքն ու բարքը** ընդհանրապէս գոհացուցիչ էր եւ կը համապատասխանէր այն համբաւին, զոր վարժարանս կը վայելէ իւր մէջ առ հասարակ տիրող բարոյական եւ կրօնական լուրջ կեանքին նկատմամբ, սակայն միանաւոր անախորժ երեւոյթներ ալ չպակսեցան դժբաղդաբար ։ Երկու աշակերտք՝ իբր դայթակղեցուցիչ տարրեր՝ արձակուեցան տարեկան քննութիւններէն յետոյ ։ Տեսչութիւնը խորին ցաւով կը մտածէ նոցա վրայ եւ կը սիրէ յուսալ թէ կեանքի փշոտ ասպարիզին վրայ շուտով պիտի զգաստանան եւ բոլորովին անպտուղ չպիտի դարձնեն վարժարանէս իրենց ստացած կրթութեան սերմերը եւ իրենց ծնողաց այնչափ ատեն ըրած զոհաբերութիւնները ։

Վարժարանիս մէջ մատակարարուած կրօնական-բարոյական դաստիարակութեամբ եւ աշակերտաց վարուց ու բարուց մասին գիշեր ցերեկ տարուած հոգածութեամբ ու հսկողութեամբ պէտք էր որ իրենց դաստիարակներն ու ծնողները տխրեցնող աշակերտք բնաւ չլինէին կամ գոնէ կարի հազուագիւտ դառնային. սակայն մոռնալու չէ, թէ՝ Վարժարան մը իւր մանկավարժական եւ բարոյական բոլոր զօրութեամբ հանդերձ չի կրնար միշտ խուսափիլ այն տխուր իրողութենէն թէ «Միտք մարդոյ ի խնամս չարին են արձանացեալ», մոռնալու չէ մանաւանդ թէ Վարժարան մը միմիայն իւր ջանքերով չի կրնար կատարելապէս հասնիլ իւր առաջադրած նպատակին, այլ, ինչպէս ամեն ազգի մէջ, այնպէս ալ մերինին մէջ շատ պէտք ունի ընկերութեան եւ ծնողական տան հզօր դաշնակցութեան եւ աջակցութեան ։ Վարժարանս այդ բաղձացեալ օգնութիւնը պէտք եղած չափով չի գտներ դժբաղդաբար, զի, ինչպէս յայտնի է, երկրին ընկերական բարքերը երբեմն աննպաստ ազդեցութիւն կը գործեն աշակերտին մտքին ու սրտին վրայ, եւ տակաւին մեծ թիւ մը չեն

կազմեր այն անձինք կամ ծնողք, որք ճշմարտապէս կ՚ըմբռնեն դաստիարակութեան այնչափ փափուկ եւ այնչափ դժուարին գործին էական նշանակութիւնը, արժանիքն ու պահանջները։

---

Աշակերտաց առողջական վիճակը *գրեթէ ամեն տարի նախանձելի եղած է, այնպէս որ Վարժարանիս անցեալ առաջին տասն տարիներու մէջ նորա յարկին ներքեւ միայն մէկ աշակերտի մահ տեղի ունեցած է. բնականաբար առանց հաշուելու այն քանի մը աշակերտները, որոնք Վարժարանէն դուրս կամ իրենց ծնողաց քով մեռած են։ Աչքի զարնող այս ուրախաւիթ հանգամանքը Վարժարանս կը պարտի ոչ միայն իր առողջապահիկ կարգադրութեանց, այլ նաեւ Կարնոյ, թէպէտ քիչ մը ցուրտ, սակայն գերազանցապէս առողջարար կլիմային, որուն այնչափ շուտ եւ դիւրաւ կը վարժուին երկրին զանազան կողմերէն, նոյն իսկ ամենէն տաք տեղերէն եկող աշակերտք։ Այս տարի եւս, չնայելով որ Վարժարանս իւր նախորդ տարուան Բժիշկ Տօքթոր Սասունի մեկնումէն յետոյ տարուան մեծ մասը չէր յաջողած իւր սեպհական բժիշկն ունենալ, աշակերտաց մէջ մինչեւ Մայիս ամիս հիւանդութիւնք գրեթէ բնաւ չպատահեցան։ Երկու ամիս միայն կը մնար տարեկան քննութեանց, երբ անամպ երկնքէ եկած կայծակի պէս կարճ ժամանակամիջոցի մէջ իրարու ետեւէ տեղի ունեցան երկու աղայի կորուստներ։ Մայիս 3ին, ըղեղային ժանտատենդի տասնօրեայ հիւանդութենէ մը յետոյ, իւր 20 տարեկան հասակին մէջ վախճանեցաւ Զ. Դասարանի աշակերտ Ս. Պօյաճեան Թրիպօլցի, եւ նոյն ամսի 17ին, լեարդի քսանօրեայ հիւանդութենէ մը յետոյ, իւր 18 ամեայ հասակին մէջ՝ Դ. Դասարանի աշակերտ Մ. Մարկոսեան Շապին Գարահիսարցի։ Քաղաքին ամենէն լաւ բժիշկները շարունակ այցելելով ամեն ճիգ թափեցին եւ Տեսչութիւնը ամեն կերպ հայրական խնամք տարաւ, սակայն անկարելի եղաւ անողոք հիւանդութեան ճիրաններէն ազատել յուսալից ապագայ խոստացող այդ դժբաղդ տղաքը։*

*Երկուքն եւս վայելուչ հանդէսով թաղուեցան Վարժարանիս վաղամեռ ուսուցիչ Պօղոս Դելիպեանի շիրմին առընթեր։ Վարժարանս յաւիտենական հանգիստ կը մաղթէ իւր այդ վաղաթառամ սիրեցեալ աշակերտաց եւ երկնային մխիթարութիւն նոցա դժբաղդ ծնողաց ու մերձաւորաց։*

---

**Վարժարանիս ներքին կեանքը** *կանոնաւորուած էր բարեկարգ գիշերօթիկ հաստատութեան մը յատուկ օրէնքներով ու կանոններով։ Օրուան ժամանակի բաշխումը կատարուած էր տարիներէ ի վեր գրեթէ անփոփոխ պահուած* **Տնակարգին** *համաձայն, որ հետեւեալն է.*

*Առաւօտուն, որոշեալ ժամանակին, աշակերտք վեր կը կենան, ձմեռը (ըստ Եւրոպ.) ժամը 6ին եւ ամառը 5ին։*

*Վեր կենալու համար դրուած նշանէն ոչ աւելի քան կէս ժամ յետոյ աշակերտք լուացուած, սանտրուած եւ հագնուած կը լինին, եւ երաժշտութեան սրահին մէջ «Առաւօտ լուսոյ» երգով, «Գոհանամք զքէն Տէր Աստուած մեր, որ պարգեւեցեր զմեզ ի հանգստենէ քնոյ» աղօթքով եւ «Հայր մեր»ով իրենց առաւօտեան աղօթքը միասին կատարելէ յետոյ, կսկսին պարապիլ։ Ձմեռը 6,40էն մինչեւ 7,40 եւ ամառը 5,40էն մինչեւ 6,40 պարապմունքի ժամանակ է։*

*Ձմեռը 7,40ին եւ ամառը 6,40ին ճաշարանին մէջ կը նախաճաշեն՝ ստանալով հաց եւ թէյ։ Նախաճաշը, ինչպէս նաեւ ճաշն ու ընթրիքը, կսկսին եւ կը վերջանան աղօթքով։ Նախաճաշէն յետոյ մինչեւ դասերուն սկիզբը ազատ ժամանակ է։*

*Ձմեռը 8էն մինչեւ 12 եւ ամառը 7էն մինչեւ 11 կառնեն չորս դաս, որոնք իրարմէ կը բաժնուին մէկ քառորդ ժամուան դադարով, այնպէս որ իւրաքանչիւր դաս կը տեւէ 3/4 ժամ։ Ամառը 11էն մինչեւ 12 եղած միջոցը պարապմունքի ժամանակ է։*

*Ժամը 12ին կը լինի ճաշը, որ կը բաղկանայ ապուրէ, մէկ տեսակ պարզ կամ բանջարեղէնով խառն մսեղէն կերակուրէ եւ շաբաթը մէկ երկու անգամ նաեւ խմորեղէնէ կամ պտուղէ։ Ճաշէն յետոյ մինչեւ ժամը 2ը ազատ ժամանակ է։*

*Ժամը 2ին կսկսին կէսօրէն յետոյ մինչեւ ժամը 5 եղած դասերը։ Դաս չունեցող դասարաններուն համար այդ միջոցը յատկացեալ է պարապմունքի։*

*Ժամը 5ին կը լինի ընթրիքը, որ կը բաղկանայ մէկ տեսակ մսեղէն կերակուրէ։ Անկէ յետոյ մինչեւ 6 ազատ ժամանակ է։ 6էն մինչեւ 7 կառնուին երաժշտական եւ արհեստական դասերը, որոնց չմասնակցողաց համար այդ միջոցը յատկացեալ է պարապմունքի։*

*Ձմեռը 8ին եւ ամառը 7ին Երաժշտութեան սրահին մէջ*

տեղի կունենայ երեկոյեան աղօթքը, որ կը բաղկանայ «Հրեշտակ զուարթուն» երկձայն երգէն, «Տէր Աստուած մեր, դու պահեա զմեզ» աղօթքէն եւ «Հայր մեր» էն։ Փոքրերը կը պառկին ձմեռը 8½ին և ամառը 7½ին, իսկ մեծերը ձմեռը 9½ին, ամառը 8½ին։ Աղօթքէն մինչեւ պառկիլը եղած միջոցը յատկացեալ է պարապմունքի։

Շաբաթ օրերը կէս օրէն յետոյ դաս չի տրուիր։ Նոյն օրը երեկոյին եւ Կիրակի առաւօտ աշակերտք ուսուցչաց հետ միասին Ս. Եկեղեցի կերթան։

Վարժարանական այս միօրինակ կեանքը զուրկ չէ սակայն ախորժելի ընդհատումներէ, որոնք գիշերօթիկ հաստատութեան մը մէջ մանաւոր հրապոյր ու քաղցրութիւն ունին աշակերտին համար, եւ անմոռանալի յիշատակներ կը թողուն նորա ապագայ կեանքին համար։ Այսպէս այս տարի եւս սովորական աշխուժիւ ու զուարթութեամբ կատարուեցան Հին Շէնքի ընդարձակ սրահին մէջ Նոր Տարուան, Ս. Ծննդեան, Բարեկենդանի եւ Ս. Զատկի հանդէսները, որոց մասնակցեցան գրեթէ բոլոր աշակերտք Հայերէն, Տաճկերէն, Գաղղիերէն եւ Գերմաներէն արտասանութիւններով, երգերով եւ ջութակի ու դաշնակի մենանուագներով ու խմբանուագներով։ Զատկի երեքշաբթի իրիկունը երկու բարձր դասարաններէն կազմուած խումբ մը ուսուցչաց եւ աշակերտաց շրջանակին մէջ մեծ յաջողութեամբ ներկայացուց նաեւ Մոլիէռի Le malade imaginaire կատակերգութիւնը, որ կը կրէր դպրոցի մը համար հարկ եղած փոփոխութիւնը։

Յիշեալ հանդէսներուն մէջ իրենց կրօնային հանգամանքով մանաւոր տեղ մը կը բռնեն Ս. Ծննդեան եւ Ս. Զատկի հանդիսաւոր Տնօրհնէքները, որոնք ուրիշ տարիներու պէս Հին Շէնքի չքեղապէս լուսազարդուած սրահին մէջ տեղի ունեցան հանդիսադրութեամբ Պատր. Փոխանորդ Սրբազան Հօր եւ ի ներկայութեան աշակերտաց ծնողաց եւ այլ անձանց։ Երկու անգամին եւս աշակերտք միաբերան երգեցին Տնօրհնէքի շարականը, «Խորհուրդ մեծ»ը եւ «Այսօր յարեաւ»ը, եւ յաւարտ արարողութեան կարգաւ համբուրելով Սրբազան Հօր աջը՝ ըստ սովորութեան ստացան մի մի նշխար։ Տնօրհնէքներուն յաջորդող Խթման զուարթ սեղաններուն ներկայ էին բոլոր ուսուցիչք եւ աշակերտք, ի բաց առեալ տեղացի աշա-

կերպները, որք այդպիսի առիթներու մէջ սովորաբար արձակուրդ կ'ստանան։

Եռանդալից ցնծութեամբ տօնուեցան երկրիս Մեծանուն Ինք-նակալ Օգոստափառ Սուլթան Ապտ-Իւլ-Համիտ Բ. Խանի Ծննդեան եւ Գահակալութեան բարեբաստիկ Տարեդարձները: Լուսավառու-թիւնք, հրավառութիւնք եւ աշակերտաց նուագածութիւնք, որոնք ուրիշ տարիներու պէս այս անգամ եւս տեղի ունեցան Վարժարանիս մէջ, յայտարար նշաններն էին այն հաւատարմական զգացմանց, զորս Վարժարանս կը տածէ ուսումնասէր Վեհապետին նկատմամբ։

Աշակերտք ամառը իրենց ազատ ժամերը մեծ մասամբ կանց-ընէին Վարժարանիս գեղեցիկ պարտէզին, ընդարձակ խաղարանին ու մարմնամարզարանին մէջ։ Իսկ ձմրան եղանակին մէջ, կապոյտ պայծառ երկնից տակ, Վարժարանիս ընդարձակ սառուցին վրայ յաճախ կը կատարէին չմշկութեան յոյժ առողջարար եւ հաճելի զբօսանքը, զոր Վարժարանս տարիներէ ի վեր ներմուծած է երկրիս մէջ, եւ որով կրցած է Կարնոյ բարձանց վրայ տիրող անուանի ձմեռն այնչափ հրապուրելի եւ սիրելի դարձընել իւր համայն աշակերտաց։

Ինչպէս նախորդ ուսումնական տարին, այնպէս ալ այս տարի տարեկան քննութիւններէն մէկ երկու շաբաթ առաջ տեղի ունեցաւ յատկապէս ընթացաւարտից դասարանին նուիրեալ շրջագայու-թիւն մը՝ իբրեւ կրօնաիրական ու բարեպաշտական պտտաւորու-թիւն։ Այս անգամ Կարմիր Վանքն էր ընտրուած, որ քաղաքէն ոտքով 5 ժամու չափ հեռի կը գտնուի։ Առաւօտուն կանուխ խումբը Ֆուրկօնով մեկնեցաւ եւ կէսօրէն առաջ հասաւ այնտեղ։ Գեղեցիկ երեկոյ մ'էր, զոր Տեսուչը, գլխաւոր ուսուցիչք եւ ընթացաւարտուք իրարու հետ անցուցին այն նկարագեղ Մենաստանի պարտէզին մէջ՝ իրենց կրօնական ուխտը կատարելէ յետոյ՝ ընթացաւարտուք տեղա-կան պարեր բռնեցին եւ իրենց հետ բերած ջութակներով արեւել-եան եւ եւրոպական եղանակներ հնչեցուցին, զի կզգային թէ քանի մը շաբաթէն իրենց դպրոցական ուսեալ շրջանն այլեւս տեղի պիտի տար աշխարհի բազմահոգ կեանքին։

Վարժարանը այս տարի եւս իւր ամառնային արձակուրդի մէկ մասը, այն է Օգոստոս ամիսը, անցուց իւր Ամառանոցին՝ Արտաձորի մէջ, որ կը ձգուի Կարնոյ դաշտը հիւսիսային կողմէն փակող Խա-

չափայտի լեռանց մէջ՝ հարաւային արեւմուտքէն դէպի հիւսիսային արեւելք, քաղաքէն ոտքով չորս ժամ հեռի։ Օրերով առաջ հարկ եղած նախապատրաստութեանց նեռնուելէն յետոյ՝ յիշեալ ամսի 1 ին այնտեղ կը գտնուէին 68 աշակերտք, Տեսուչք իրենց ընտանիքներով և բոլոր ուսուցիչք։ Ցանկապէս փարձուած մարգերու վրայ զարնուած էին վարժարանին սեպհական 15 ի չափ խոշոր եւ գեղաձեւ վրանները, ուրիշ քանի մը մասնաւոր վրաններու հետ։ Փայտէ շինուած էին մառանն ու խոհանոցը։ Վրաններու աղեղնաձեւ երկայն շարքին առաջ կը պարզուէր Զորավակի ընթացքին վրայ յատկապէս շինուած ընդարձակ լողարան մը իր վրայ տատանող սիրուն նաւակով եւ իր բերնին վրայ կազմուած շառաչուն ջրվէժով։

Սրտաձորի ժամանակացոյցը հաճելին եւ օգտակարը միացնելու սկզբունքով կը տրամադրէր օրը 2-3 ժամ ուսումնական զբաղում, զոր աշակերտք 15 մեթր երկայնութիւն եւ 6 մեթր լայնութիւն ունեցող ընդարձակ սեղանատուն-վրանի զով շուքին տակ գրասեղանի առաջ անձանձիր կը կատարէին։ Աշակերտք իրենց ազատ ժամանակը մեծ մասամբ կը նուիրէին զբօսանքի. ամեն օր կանոնաւորապէս 2 անգամ, ճաշէն եւ ընթրիքէն առաջ, ամենքը միասին կը լողային պաղ ջրին մէջ, իսկ միւս ժամանակները կը թիավարէին, կամ զանազան խաղեր կը կատարէին վրաններուն շուրջը, փոսակին եւ առուներուն եզերքները եւ Զորաբերանը եզերող լերանց տափարակ քղանցքներուն վրայ։

Ջերմ շնորհակալութեան զգացումներով պէտք է յիշել այս տեղ թէ տեղական բարեխնամ Կառավարութիւնը, ուրիշ տարիներու պէս, այս տարի եւս բարեհաճած էր 2 հեծեալ ոստիկաններ շնորհել, որոնք գիշեր ցերեկ կը հսկէին վրաններուն ապահովութեան համար. ասկէ զատ իր յատուկ պատուէրին համաձայն՝ դաշտին ապահովութեան հսկող հեծեալ ոստիկաններու մէկ խումբը իր պտոյտներուն մէջ մասնաւոր ուշադրութիւն կը դարձնէր մեր վրաններուն շրջակայքին։

Ինչպէս կը տեսնուի՝ Վարժարանիս մէջ ուսումնական լուրջ պարապմանց հետ առողջապահութիւնն ու զբօսանքն եւս չեն պակսիր աշակերտաց, եւ ասով գոհացում կը տրուի մանկավարժութեան օրէնքներէն մէկուն, որ կը պահանջէ ներդաշնակութեան մէջ պահել

աշակերտին միտքն ու մարմինը։ Վարժարանիս այս ուղղութիւնն ու մեծ առաւելութիւնը չի գնահատուիր այն կարգի անձանց կողմէ, որք կա՛մ անգիտակ են բոլորովին մանկավարժութեան օրինաւոր պահանջներուն, եւ կա՛մ չարախօսելու պատրուակներ կը փնտռեն, եւ այսպէս կսկսին աստին անդին խօսիլ եւ հրատարակել իբր թէ վարժարանս եւ մասնաւորապէս զայն կառավարողք ետեւէ են «Խրախճանալու եւ զուարճանալու»։ Վարժարանէս հեռու գտնուող եւ հետեւաբար բուն իրողութեանց անծանօթ բարեմիտ անձինք ի հարկէ կը գայթակղին այդպիսի լուրերէ՝ խորհելով անշուշտ թէ այդ խրախճանութիւն եւ զուարճութիւն ըսուածները երկրին մէջ սիրուած եւ հասկցուած բաներն են, այսինքն ոգելից ըմպելիք, զեղխութիւն, թղթախաղ եւայլն։ Արեւու պէս պայծառ եւ այսչափ տարիներու ընթացքին մէջ համայն Կարնեցւոց կարծենք շօշափելի դարձած իրողութիւն մ'է սակայն թէ՝ զուարճութեան այդ անգոսնելի միջոցները Տեսչաց կամ Վարժարանին ուրախութեանց մէջ բնաւ երբեք դեր կատարած չեն։ Տեսչաց եւ ուսուցչաց սիրած, եւ, ինչպէս բնական է, մեծ մասամբ իրենց աշակերտաց հետ միասին կատարած ուրախութեանց միջոցները ուրիշ բան եղած չեն եւ չեն կարող լինել, եթէ ոչ Տեղեկագրիս մէջ յիշուած երաժշտութիւնը, չմշկութիւնը, օդափոխութիւնը եւ այլ այսպիսի բոլորովին անմեղ, առողջարար եւ կրթիչ զբօսանքներ, եւ եթէ Վարժարանը այս կերպիւ իւրովսանն կը նպաստէ լաւ տարբերքներուն ներմուծման կամ տարածման, այդ բանը իրաւամբ արժանի եւ պարծանք կը համարի իւր համար։

---

Վարժարանի **Գրադարանը** այս տարի բաւական յաւելումներ ունեցաւ, որոնք զանազան Գիտութեանց ու լեզուաց, մանաւանդ Մանկավարժական գիտութեան վերաբերեալ մեծ մասամբ Գերմաներէն լեզուով գրքեր ու հրատարակութիւններ, ինչպէս նաեւ աշակերտաց ընթերցանութեան վերաբերեալ Հայերէն եւ օտարալեզու գրքեր էին։ Հայերէն պարբերական հրատարակութիւններէն եւս շատերը կստացուէին։

Ինչ ինչ յաւելումներ ստացան նաեւ **Ուսումնական միջոցներէն** Բնապատմութեան (Կենդանաբանութեան, Մարդաբանու-

թեան, Հանքաբանութեան, Երկրաբանութեան), Աշխարհագրութեան, Սրբազան Պատմութեան, Ընդհանուր Պատմութեան, Թուաբանութեան, Երկրաչափութեան եւ Գծագրութեան վերաբերեալ արդէն ճոխ եւ ընտիր հաւաքածոյները, որոնք այնչափ կը գեղեցկացնեն եւ կը կենդանացընեն Վարժարանիս մէջ աւանդուած դասերը։

---

Վարժարանի վարչութեան գործերը 'ի սկզբանէ անտի գործադրուող եղանակին համաձայն կը կատարէին երեք Սան-Տեսուչք հաւաքական պատասխանատուութեամբ եւ Կտակակատարի վերին տնօրէնութեան ներքոյ։ Տեսչական նիստերու մէջ կը կարգադրէին Վարժարանին ուսումնական, տնտեսական եւ յարաբերական խնդիրները, եւ ամսական մանրամասն հաշիւներով ու նամակներով ամեն ինչ կը տեղեկագրէին Կտակակատարին։ Աշակերտաց կարգապահութեան եւ պաշտօնէից գործառնութեանց մասին հարկ եղած հսկողութիւնը կատարելու համար կարգաւ կը վարէին շաբաթական հերթապահութեան պաշտօն։

Սան-Տեսուչք թէեւ այս կամ այն գործը պարագաներուն պահանջած ատեն ի միասին կը կատարէին, սակայն աշխատութեան բաժանման սկզբունքով գլխաւոր պաշտօնները իրենց մէջ բաժնած էին հետեւեալ կերպիւ։ Աբուլեան Գ. կը վարէր գանձապետութեան պաշտօն եւ կը կատարէր Կտակակատարի հետ հարկ եղած թղթակցութիւնը, Մատաթեան Յ. կը ներկայացնէր Վարժարանը արտաքին յարաբերութեանց մէջ եւ կը հսկէր Արհեստանոցին ու Թանգարանին վրայ, իսկ Սողիկեան Ս. կը վարէր Վարժարանին Օրագրութիւնը, աշակերտաց ծնողներուն հետ հարկ եղած թղթակցութիւնը եւ կը հսկէր Գրադարանին վրայ։

Վարժարանին մէջ բնակող 2 Սան-Տեսուչք ի մասնաւորի կը կատարէին գիշեր ատեն հարկ եղած տեսչական հսկողութիւնը։

---

Աշակերտաց վերակացութեան գործը կը կատարէին Ընթացաւարտ-Օգնական Ուսուցիչք՝ 2 ական հոգի կարգաւ օրապահութիւն ընելով։

Վարժարանի հաշուապահութեան պաշտօնը կը կատարէր Մարտիրոս Քէնտիկեան։

Տնտեսական մատակարարութեան գործերը կը տանէր Օգնական Ուսուցիչներէն Տ. Բրուտեան, որ կը գործադրէր նաեւ Բժշկի հրահանգները եւ Վարժարանիս դեղարանին մէջ կը պատրաստէր աշակերտաց համար հարկ եղած սովորական դեղերը։ Տնտեսական գործերուն մէջ անոր կօգնէին Ընթացաւարտ-Ուսուցիչներէն Գ. Դոյինեան եւ Ե. Աւետիսեան։

Տնտեսական կազմակերպութիւնը այս տարի կարեւոր փոփոխութիւն մը կրեց։ Բարեյիշատակ Հիմնադիրն իր Երեք Սաները նկատելով իբրեւ իր զաւակները եւ ոչ թէ իբրեւ վարձեալ մշակներ, այնպէս կամեցած էր որ փոխանակ նոցա բոլոր պիտոյքներուն համապատասխանող ամսական տրուելու, Վարժարանին տնտեսական մատակարարութենէն հոգացուին իրենց եւ իրենց ընտանեաց ինչ ինչ պէտքերը։ Սակայն փորձով տեսնուեցաւ յետոյ թէ այս եղանակը խճող կերպարանք մը կուտար Վարժարանին տնտեսական մատակարարութեան եւ ուրիշ անյարմարութիւններ ունէր, ուստի Սան-Տեսչաց երկար ատենէ ի վեր ունեցած փափաքին եւ Կտակակատարին յատուկ մէկ պաշտօնագրին տրամադրութեանց համաձայն Վարժարանէն զատուեցաւ նոցա տնտեսութիւնը։

---

Վարժարանը ներկայ ուսումնական տարւոյն հետ կը վերջացնէ իր Առաջին Տասնամեայ շրջանը, եւ կը պատրաստուի առաջիկայ ուսումնական տարեգլխէն մտնելու նոր շրջան մը, երբ պիտի սկսի գործադրուիլ Բարեյիշատակ Հիմնադրի Կտակի հիման վրայ Կտակակատարի կողմէ Վարժարանիս համար պատրաստուած Կանոնագիրը, որ այս տարուան Յուլիս ամսոյ 16 ին ընդունուեցաւ եւ վաւերացաւ Ազգային Կեդրոնական Վարչութեան կողմէ։

Այդ Կանոնագրին համաձայն, որով կը սահմանուին Վարժարանիս հիմնական կանոնները եւ նորա Վարչութեան եղանակը, արդէն կազմուած է Վարիչ մարմիններէն առաջինը, այն է Կ. Պոլսոյ Խնամակալութիւնը, Նախագահութեամբ Ամեն. Սրբազան Պատրիարք Հօր եւ անդամակցութեամբ Մայրաքաղաքի ականաւոր ազգայիններէն 6 անձանց, որք են.

| | | |
|---|---|---|
| Էսաեան | Յովհաննէս | էֆէնտի |
| Կիւլպէնկեան | Պատրիկ | » |
| Մաքսուտ | Սիմոն | Պէյ |
| Նորատունկեան | Գաբրիէլ | էֆէնտի |
| Նուրեան | Յովհաննէս | » |
| Ունճեան | Աբիկ | » |

Կտակի եւ Կանոնագրի տրամադրութիւններէն մին լինելով Վարժարանին գտնուած տեղւոյն վրայ եւս Հոգաբարձութիւն մը հաստատել Կեդրոնական Խնամակալութեան անմիջական հսկողութեան եւ Թեմակալ Առաջնորդին նախագահութեան ներքեւ, Պատկառելի Խնամակալութիւնը՝ որ ըստ Կանոնագրի պաշտօն ունի այդ մարմնոյ ընտրութեան եղանակը որոշելու, այս անգամուան համար այնպէս որոշեց որ տեղւոյս Գեր. Պատր. Փոխանորդ Հայրը եւ Վարժարանիս Տեսչութիւնն ի միասին կարենցի վեց արժանաւոր անձերէ բաղկացեալ ընտրելեաց ցանկ մը պատրաստեն, որպէս զի նոցանէ 3ը բուն անդամ եւ միւս 3ը նոցա փոխանորդ որոշուին Խնամակալութեան կողմէ՝ ըստ Կանոնագրի։

Պատկ. Խնամակալութեան այս հրահանգին համաձայն Գեր. Պատր. Փոխանորդ Սրբազանը եւ Վարժարանիս Տեսչութիւնը այս տարուան Օգոստոս ամսոյ 5ին Ազգային Արքեպիսկոպոսարանի մէջ նիստ կազմելով, Տեղական Հոգաբարձութեան անդամակցութեան համար միաձայնութեամբ իբրեւ ընտրելի որոշեցին հետեւեալ 6 արժանաւոր արձինքը.

| | | |
|---|---|---|
| Խարաճեան | Դանիէլ | էֆէնտի |
| Խէրպէկեան | Զաքար | » |
| Համամճեան | Յակոբ | » |
| Ղայթանճեան | Մկրտիչ | » |
| Տէր Ազարեան | Կարապետ | » |
| Տիգրանեան | Յակոբ | » |

Կանոնագիրը կը տրամադրէ իբրեւ երրորդ եւ չորրորդ վարիչ մարմիններ Վարժարանի Վերատեսուչը եւ Ուսուցչական Մանկաժողովը Վերատեսչի ատենապետութեամբ։ Այդ Մանկաժողովը

*պիտի կազմուի առաջիկայ ուսումնական տարեգլխին, իսկ Վերատեսչութիւնը այսուհետեւ եւս պիտի վարեն Հոգելոյս Հիմնադրի երեք Սանունք այն կարգադրութեանց համաձայն, զորս Կտակակատարն ըրած է իր 1891 Յունվար 31 թուական երկու պաշտօնագրերով։* Սան-Տեսուչի *Կտակի եւ Կանոնագրի տրամադրութեանց համաձայն ցկեանս անդամ են նաեւ Տեղական Հոգաբարձութեան, եւ այսուհետեւ եւս առաջուան եռանդով պիտի շարունակեն իրենց պաշտօնը ի մխիթարութիւն հոգւոյ իրենց բազմերախտ, ամենասիրելի Բարերարին, որու բարենպատակ հաստատութեան առաջին մշակները լինելու թանկագին բաղդն ունեցած են։*

*Երջանիկ կը համարի ինքզինք Վարժարանս, երբ տուեալ պարագաներու բերմամբ քիչ շատ անխուսափելի փորձութիւններ կրելէ յետոյ՝ վերջապէս կստանայ տարիներու լուրջ մտածմանց արդիւնք եղող ընտիր կազմակերպութիւն մը, որ յարատեւ կենաց երաշխիքը կընծայէ իրեն, եւ երբ կը խորհի թէ իր այս բոլոր յաջողութիւնը, նոյն իսկ իր գոյութիւնը, կը պարտի այն հզօր պաշտպանութեան, զոր ուսմանց եւ արհեստներու զարգացման ամենակարեւոր գործին միշտ կը նուիրէ երկրիս Լուսամիտ Ինքնակալ* Օգոստափառ Սուլթան Ապտ-Իւլ-Համիտ Բ. *Կայսրը, ջերմ երախտագիտական զգացումներով լցուած կը մաղթէ, որ Երկինք արեւշատութիւն պարգեւէ Նորին Կայսերական Վեհափառութեան՝ յօգուտ եւ ի բարօրութիւն Իւր Պետութեան հաւատարիմ հպատակներուն։*

Անդամ Տեսչութեան

*ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ*

**ՍԱՐԳԻՍ ՍՈՂԻԿԵԱՆ**

**Կարին, 1892 Օգոստոս 31**

# ԱՇԱԿԵՐՏՔ 1891 — 1892 ՈՒՍՈՒՄՆ. ՏԱՐՈՒԱՆ

## ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԱԿԱՆ ԴԱՍԱՐԱՆ

### Ա. Թոշակաւորք

1. Պէրպէրեան Կարապետ, Արաբկիր
2. Պօզօյեան Նազարէթ, Կարին
3. Չիքեան Տիգրան, Եօզկատ
4. Թիւթէլեան Միհրան, Մալաթիա
5. Թօփալեան Արտաշէս, Կ. Պոլիս
6. Թօփալեան Տիգրան, »
7. Խպէյեան Երուանդ, Կարին
8. Խէրպէկեան Բագարատ, »
9. Ծատուրեան Վաղարշակ, Բաբերդ
10. Կարապետեան Նշան, Սեբաստիա
11. Ղարիմանեան Միքայէլ, Եօզկատ
12. Գումճեան Թորոս, Տիգրանակերտ
13. Հանէսեան Արմենակ, Կարին
14. Հանէսեան Բիւզանդ, »
15. Հէյրանեան Արմենակ, Տիվրիկ
16. Ղուկասեան Հրաչեայ, Շապին Գարահիսար
17. Զննոզեան Արսէն, Կեսարիա
18. Զննոզեան Գէորգ, Էնկիւրիւ
19. Պալասանեան Պարոյր, Կարին
20. Վարդապետեան Արտաշէս, Երիզա
21. Վարդապետեան Վարդան, »
22. Տէր Գրիգորեան Խոսրով, Ակն

### Բ. Ձրիավարժք

23. Թօխաճեան Թադէոս, Կարին
24. Կիւրոյեան Արմենակ, Կարին

25. Մէզպուրեան Յովհաննէս, Կ. Պոլիս
26. Նահապետեան Սրապիոն, Կարին
27. Պօղոսեան Համազասպ, Ալաշկերտ
28. Սիրբէկեան Արամ, Տիգրանակերտ

## ԵՐՐՈՐԴ ԴԱՍԱՐԱՆ

### Ա. Թոշակաւորք

1. Աճէմեան Աբրահամ, Արապկիր
2. Արշարունի Երուանդ, Կ. Պոլիս
3. Պալլարեան Արամ, Կարին
4. Պաքալեան Եղիա, Սաբաստիա
5. Կիւլպէնկեան Գառնիկ, Կեսարիա
6. Դանիէլեան Հայկ, Երիզա
7. Եկաւեան Բարթող, Արաբկիր
8. Եկաւեան Վահան, »
9. Թէլլալեան Յովհաննէս, Կեսարիա
10. Թօքաթլեան Երուանդ, Սամսոն
11. Խէրպէկեան Մարտիրոս, Կարին
12. Գարակիւլլէեան Փայլակ, Կարս
13. Գույումճեան Միսաք, Կեսարիա
14. Գույումճեան Նշան, Խարբերդ
15. Գոչունեան Տիգրան, Կիւրին
16. Հիւսիսեան Երուանդ, Շապին Գարահիսար
17. Միսաքեան Հրանտ, Խարբերդ
18. Մուրատեան Արտաշէս, Սամսոն
19. Մուրատեան Վահան, »
20. Մարեան Արմենակ, »
21. Յակոբեան Արտաշէս, Եօզղատ
22. Շահինեան Արամ, Կարին
23. Շահինեան Մկրտիչ, Սեբաստիա
24. Պարսամեան Գրիգոր, Զարշամպա
25. Սահաթճեան Մկրտիչ, Կարին
26. Քէշիշեան Յակոբ, Մարզուան

### Բ. Ձրիավարժ

27. Ջրաղացպանեան Եղիշէ, Վան

## ՉՈՐՐՈՐԴ ԴԱՍԱՐԱՆ

### Ա. Թոշակաւորք

1. Արագիլեան Սամփան, Սեբաստիա
2. Պալախեան Գրիգոր, Եւդոկիա
3. Տրմփեան Պետրոս, Կարին
4. Զաքարեան Վահրամ, »
5. Լեփեան Ռուբէն, Երիզա
6. Խաչեան Միսաք, Տրապիզոն
7. Խօշմաթեան Տիգրան, Քղի
8. Գույումճեան Ղուկաս, Խարբերդ
9. Գօլանճեան Պետրոս, Արաբկիր
10. Համէսեան Յովհաննէս, Կարին
11. Մանուկեան Վահան, Էնկիւրի
12. Մարկոսեան Միհրան, Շապին Գարահիսար
13. Մարանեան Զաքար, Կիւրին
14. Շահինեան Վահան, Կարին
15. Շիշմանեան Յակոբ, Երիզա
16. Չիրքինեան Խոսրով, Արաբկիր
17. Պանիրեան Ռուբէն, Վան
18. Սիւրմէնեան Գիսակ, Երիզա
19. Փաչաճեան Վարդան, Տրապիզոն
20. Ֆէթվաճեան Միսաք, »

### Բ. Ձրիավարժք

21. Պագիրկեանեան Մկրտիչ, Կարին
22. Կիւլպէնկեան Մկրտիչ, »
23. Տէր Սահակեան Մարտիրոս, Սամսոն

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՍԱՐԱՆ

### Ա. Թոշակաւորք

1. *Անդրէասեան Հրանտ, Օրտու*
2. *Արապեան Յարութիւն, Կիւրին*
3. *Պաքալեան Սեդրակ, Սեբաստիա*
4. *Դանիէլեան Դերենիկ, Նիկիա*
5. *Թամթիկեան Արամ,* »
6. *Խպէյեան Միհրան, Կարին*
7. *Խաչեան Մանուկ, Տրապիզոն*
8. *Գարակիւլէեան Աղէքսանդր, Կարս*
9. *Գույումճեան Խոսրով, Տիգրանակերտ*
10. *Համէսեան Վահան, Կարին*
11. *Հէյրանեան Գէորգ, Տիվրիկ*
12. *Հէյրանեան Թորոս,* »
13. *Ճանճիկեան Սարգիս, Արաբկիր*
14. *Մարանեան Վարդաւառ, Կիւրին*
15. *Մխաքեան Յարութիւն, Խարբերդ*
16. *Նաճարեան Վահան, Կարին*
17. *Պօտոսեան Ռուբէն, Շապին Գարահիսար*
18. *Սողոմոնեան Սուքիաս, Մուշ*
19. *Տէր Պօղոսեան Մանուէլ, Վան*

### Բ. Ձրիավարժք

20. *Արծրունեան Արամ, Կարին*
21. *Զարգեան Յովհաննէս, Էնկիւրիւ*
22. *Զուխաճեան Տիգրան, Կարին*
23. *Սարաֆեան Ռուբէն,* »
24. *Տէր Յարութիւնեան Բարունակ, Վան*
25. *Օհանեան Հրաչեայ, Պանտրմա*

## ՎԵՑԵՐՈՐԴ ԴԱՍԱՐԱՆ

### Ա. Թոշակաւորք

1. *Պօյաճեան Սարգիս, Թրիպոլի*

2. Տէրպէտէրեան Մարտիրոս, Արաբկիր
3. Տէրպէտէրեան Յովհաննէս, »
4. Եկաւեան Կարապետ, Կարին
5. Գունտարճեան Արմենակ, »
6. Ճանճիկեան Պետրոս, Արաբկիր
7. Մախասեան Պօղոս, Տրապիզոն
8. Յովասափեան Արշաւիր, Կարին
9. Զալլաքեան Տիգրան, Կիրասոն
10. Վարդապետեան Պետրոս, Երիզա
11. Տէր Աղարեան Սողոմոն, Կարին
12. Տիրացուեան Վահան, »
13. Փաշաճեան Երուանդ, Տրապիզոն
14. Ֆէթվաճեան Արամ, »
15. Ֆէթվաճեան Գրիգոր, »

## Բ. Զրիավարժք

16. Աբգարեան Յովհաննէս, Տրապիզոն
17. Աղապալեան Սիմոն, Կարին
18. Ասատուրեան Նիկողոս, Հալէպ
19. Ատոմեան Զաքար, Կիսկիմ
20. Թիւթիւնճեան Յարութիւն, Ամասիա
21. Խաչատուրեան Յակոբ, Տիգրանակերտ
22. Մանկրոզեան Սեդրաք, Տրապիզոն
23. Շէկոյեան Գրիգոր, Կարին
24. Տէր Միքայէլեան Գրիգոր; Արաբկիր



# Դասացոյց 1891–92 (Ձմեռն)

| | ԵՐԿՈՒՇԱԲԹԻ | | | | | ԵՐԵՔՇԱԲԹԻ | | | | | ՉՈՐԵՔՇԱԲԹԻ | | | | | ՀԻՆԳՇԱԲԹԻ | | | | | ՈՒՐԲԱԹ | | | | | ՇԱԲԱԹ | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | II | III | IV | V | VI | II | III | IV | V | VI | II | III | IV | V | VI | II | III | IV | V | IV | II | III | IV | V | VI | II | III | IV | V | VI |
| 8–9 | Հա | Թ | Տ | Գմ | Կր | Հա | Գ | Թ | Կր | Գմ | Հա | Տ | Կր | Թ | Բբ | Հա | Թ | Տ | Կր | Գմ | Հա | Տ | Թ | Գմ | Կր | Հա | Թ | Տ | Կր | Բբ |
| 9–10 | Թ | Հգ | Կր | Պ | Տբ | Թ | Հա | Գմ | Տբ | Պ | Թ | Հգ | Գ | Բբ | Ա | Թ | Հա | Գմ | Պ | Տբ | Թ | Հգ | Կր | Տբ | Պ | Թ | Հա | Գմ | Բբ | Ա |
| 10–11 | Պ | Գծ | Ա | Գհ | Հգ | Կր | Թ | Ե | Ա | Գծ | Տ | Գ | Գհ | Ե | Ե | Պ | Գծ | Ա | Հա | Գ | Տ | Գ | Ե | Ա | Թ | Կր | Պ | Գ | Եչ | Տ |
| 11–12 | Տ | Ա | Գր | Հգ | Գ | Գծ | Ե | Տ | Հա | Գ | Ե | Պ | Պ | Գ | Գմ | Տ | Գ | Գծ | Գծ | Հա | Գծ | Ե | Գհ | Գծ | Հգ | Ե | Տ | Պ | Գ | Գհ |
| 2–3 | Գր | Տ | Եչ | Գ | Գմ | Ա | Տ | Հգ | Գ | Եչ | — | Գր | Հա | Եչ | Բ | Գր | Ա | Եչ | Բ | Տ | Ա | Կր | Հգ | Գ | Եչ | — | — | — | — | — |
| 3–4 | Մ | Գ | Հա | Տ | Եպ | Բ | Բ | Գ | Տ | Հա | Մ | Կր | Բ | Հգ | Տ | Կր | Մ | Հգ | Տ | Եպ | Բ | Բ | Բ | Հգ | Գ | — | — | — | — | — |
| 4–5 | — | Կր | — | Մ | — | — | Մ | — | — | Տ | — | — | Մ | Տ | — | — | — | Գ | — | Մ | — | — | — | — | — | — | — | — | — | — |
| 6–7 | — | ԴՋ | Դ | Դ | — | — | — | Ջ | Ջ | — | — | — | — | — | ԴՋ | — | ԴՋ | Դ | Դ | — | — | — | Ջ | Ջ | — | — | — | — | — | ԴՋ |
| | — | ԿՀ | ԿՀ | — | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | — | ԿՀ | ԿՀ | — | — |
| 7–8 | — | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | — | ԿՀ | ԿՀ | | | | ԿՀ | ԿՀ | — | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | — | ԿՀ | ԿՀ |

Ծանօթութիւն. — Կր = Կրօն, Եպ = Եկեղեց. պատմութիւն, Պ = Պատմութիւն, Ա = Աշխարհագրութիւն, Բ = Բնագիտութիւն, Տբ = Տառաբանութիւն, Բբ = Բնաբանութիւն, Հա = Հայերէն աշխարհաբար, Հգ = Հայերէն գրաբար, Տ = Տաճկերէն, Գ = Գաղղիերէն, Գմ = Գերմաներէն, Թ = Թուաբանութիւն, Գհ = Գրահաշիւ, Եչ = Երկրաչափութիւն, Ե = Երգ, Գր = Գեղագրութիւն, Գծ = Գծագրութիւն, Մ = Մարմնամարզ, Դ = Դաշնակ, Ջ = Ջութակ, ԿՀ = Կողարարութիւն, Հիւսնութիւն :

# ՏԵՂԵԿԱԳԻՐ

## Սանասարեան Վարժարանին Կարնոյ

### 1892—93 ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԻ

*Սանասարեան Վարժարանը իւր երկոտասաներորդ տարին սկսաւ աննպաստ պարագաներու ներքեւ ։ Սահմանակից երկիրներուն մէջ ժամանակէ մը ի վեր ճարակող Հնտախտը (folèra) 92 ի ամռան վերջերը քայլ առ քայլ մօտեցեր Կարնոյ նահանգին եւ Օգոստոսի վերջերը արդէն սկսած էր երեւնալ քաղաքին շրջակայ գիւղերէն ոմանց մէջ ։ Նախորդ 91—92 ուսումնական տարուան այդ վերջին օրերունմէջ Վարժարանիս Տեսուչք եւ Ուսուցիչք , որք ըստ սովորութեան ամառնային արձակուրդի առթիւ աշակերտաց հետ տակաւին կը գտնուէին ի Սրտաձոր , ծանր մտահոգութեամբ կը դիտէին չարաշուք հիւրին գալուստը ճիշդ այն միջոցին , երբ ուսումնական տարեգլուխն եւս կուգար կը հասնէր , եւ այսպէս սովորականէն շատ ու շատ դըժուար կերպիւ հրաժեշտ տալով Ամարաստանի օդատակար օդին ու ջրին եւ կանաչ մարգերուն՝ քաղաք վերադարձան վերսկսելու ուսմանց ընթացքը եւ միեւնոյն ժամանակ մօտէն դիմագրաւելու սպառնացող աղէտին , որ կսկսէր ինքզինք զգալի ընել քաղաքին այս ու այն կողմը ։*

*Տեղւոյս այդ համաճարակի ահարեկիչ լուրերը շուտով տարածուեցան երկրին ամեն կողմերը , եւ այն ազդեցութիւնը ունեցան որ Սեպտեմբերի սկիզբները ո՛չ արձակուրդի առթիւ հայրենիք գնացող աշակերտաց վերադարձին , ո՛չ ալ նոր ծանուցուած աշակերտաց*

գալստեան նշաններ երեւցան ։ Սակայն որովհետեւ այդ միջոցին պատահած դէպքերը շատ ցանցառ էին եւ նոյն ամսոյ 14 ին, ըստ յայտարարութեան տեղւոյս քարանթինայի տեսուչ Տօքթօր Գուլթի, երկու օրէ ի վեր ոչ մի դէպք տեղի ունեցած չէր քաղաքիս մէջ, Տեսչութիւնս՝ ի նկատ առնլով ձմրան մօտալուտ գալուստը, որով աշակերտաց ճանապարհորդութիւնը խիստ պիտի դժուարանար, այդ օրը փութաց հեռագրել բացակայ եղող աշակերտաց ծնողներուն, որպէս զի առանց ուշացնելու ուղարկեն իրենց տղայքը ։ Մայրաքաղաքի ազգային լրագրաց միջոցաւ ևս ծանուցուեցաւ թէ՝ քաղաքիս առողջական վիճակը գոհացուցիչ է եւ թէ Վարժարանիս դասերը պիտի սկսին Սեպտեմբերի 24 ին ։ Դժբաղդաբար յաջորդ օրն իսկ հնտախտի դէպքերը վերսկսան քաղաքիս մէջ եւ սրտաբեկ պատասխան մը տուին այս յայտարարութեանց ։

Սեպտեմբերի վերջերը երթալով կը սաստկանար հնտախտը քաղաքիս եւ շրջակայից մէջ, աշակերտաց գալիք ճանապարհներուն վրայ վարակեալ տեղերը կը շատնային եւ քարանթինաները կաւելնային. միւս կողմէն ալ ձմեռը կ'սկսէր ինքզինք զգալի ընել. այս վիճակին մէջ ծնողաց մեծ մասը բոլորովին ետ կասեցան իրենց տղայքը ուղարկելու մտադրութենէն ։ Վարժարանիս մէջ Մնացող դրսեցի աշակերտաց ծնողներուն կողմէ եւս հեռագիր հեռագրի վրայ կուգար, որով կը հարցուէր թէ տիրող հիւանդութեան պատճառաւ աշակերտք չպիտի՞ ցրուին. ոմանք ալ պարզապէս ետ կուզէին իրենց տղայքը ։ Սակայն Տեսչութիւնը մէկ կողմէ քաջալերուելով քարանթինայի Տեսչէն որ կը յայտարարէր թէ կարելի էր Վարժարանս իւր մեկուսացեալ առողջ դիրքին եւ իւր ընտիր ջրին շնորհիւ, ինչպէս նաեւ հարկ եղած զգուշական միջոցներու գործադրութեամբ զերծ պահել աղէտէն, միւս կողմէ նկատելով որ աշակերտք Վարժարանիս յարկին ներքեւ անհամեմատ աւելի ապահով վիճակ ունէին քան արձակուելու պարագային մէջ, երբ ճանապարհին պիտի անցնէին վարակեալ տեղերէ եւ պիտի ենթարկուէին մաքրանոցներու նեղութեանց, նամակներով ու հեռագիրներով ապահովցուց այն ծնողները, որոնց զաւակները կը գտնուէին Վարժարանիս մէջ, եւ բաւականանալով ներկայ աշակերտներով՝ Սեպտեմբերի 28 ին սկսաւ ուսմանց ընթացքը Տեղեկագրիս վերջը դրուած Դասացոյցին համաձայն ։

Որովհետև սոյն ուսումնական տարուան համար ծանուցուած 20 ի չափ թոշակաւոր աշակերտներէն միայն 4ը կրցին գալ, անհնար եղաւ Նախապատրաստական դասարան կազմել, և բնականաբար չառնուեցաւ նաև այս տարուան համար ի նկատ առնուած նոր ձրիավարժ աշակերտներու որոշեալ թիւը։ Յիշեալ նորեկ 4 թոշակաւորներէն 2ը, ինչպէս նաև նորեկ ձրիավարժ մը, նախակրթական ուսմանց մէջ բաւական պատրաստութիւն ունենալով, զետեղուեցան ամենէն ստորին դասարանին, այն է Առաջինին մէջ, իսկ միւս 2 թոշակաւորները Առաջին դասարանի համար հարկ եղած պատրաստութենէն բոլորովին զուրկ գտնուելով, ետ ղրկուեցան իրենց ծնողներուն։

---

Նախորդ (91—92) ուսումնական տարուան վերջը աշակերտաց թիւն էր 124։ Դոցանէ պակսեցան 23 ընթացաւարտք, 2 հոգի արտաքսուեցան տարեկան քննութիւններէն յետոյ, ինչպէս որ յիշուած է Նախորդ տարուան Տեղեկագրին մէջ, 18 դուրսեցի աշակերտք չվերադարձան ժանտախտին պատճառաւ, 3 տեղացի աշակերտք չեկան ընտանեկան պատճառներով. ընդամենը պակսեցան 46 հոգի և մնացին 78։ Սոյա վրայ աւելնալով վերոյիշեալ 3 նորեկ աշակերտները՝ Վարժարանս այս տարի ունեցաւ, առանց հաշուելու միմիայն Արհեստական բաժնին հետեւող 1 գիշերօթիկ և 7 ցերեկօթիկ աշակերտները, ընդամենը 81 աշակերտ, ամենքն ալ գիշերօթիկ։

Վարժարանը այս տարի ունէր միայն 4 Դասարան, որոնք էին Առաջին, Չորրորդ, Հինգերորդ և Վեցերորդ. աշակերտք անոնց մէջ զետեղուած էին հետեւեալ թիւերով.

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| Ա. | Դասարան՝ | 20 | թոշակ. | 7 | ձրիավ. | միասին | 27 |
| Դ. | » | 21 | » | 2 | » | » | 23 |
| Ե. | » | 10 | » | 4 | » | » | 14 |
| Զ. | » | 11 | » | 6 | » | » | 17 |

Ընդամենը 62 թոշակաւոր 19 ձրիավարժ միասին 81։

---

Աշակերտաց Ծնողներուն բնակավայրերը կը ներկայանային հետեւեալ թիւերով.

| | ԹՈՇԱԿ. | ՁՐԻԱՎԱՐԺ |
| --- | --- | --- |
| Կարին | 14 | 7 |
| Սեբաստիա | 5 | — |
| Երզնկա | 5 | — |
| Արաբկիր | 4 | 1 |
| Սամսոն | 4 | 1 |
| Խարբերդ | 4 | — |
| Կ. Պոլիս | 3 | 1 |
| Կեսարիա | 3 | — |
| Եոզղատ | 3 | — |
| Տիվրիկ | 3 | — |
| Բաբերդ | 2 | 1 |
| Էնկիւրի | 2 | 1 |
| Եւդոկիա | 1 | 2 |
| Տրապիզոն | 2 | — |
| Շապին Գարահիսար | 2 | — |
| Վան | — | 2 |
| Կիւրին | 1 | — |
| Ակն | 1 | — |
| Մալաթիա | 1 | — |
| Չարշամբա | 1 | — |
| Մարզուան | 1 | — |
| Տիարպէքիր | — | 1 |
| Ալաշկերտ | — | 1 |
| Պանտրմա | — | 1 |

---

Ուսուցչական մարմինը այս տարի ենթարկուեցաւ երկու ծանր կորուստներու։ Հայերէն լեզուի ու գրականութեան երկու ուսուցիչներէն մին՝ Ս. Խաչատրեան, որ 7 տարիէ ի վեր անձնուէր եռանդով ու մեծ յաջողութեամբ կը գործէր Վարժարանիս մէջ, տանելով

որ այս տարի նախապատրաստական դասարանի չկազմուելուն պատճառաւ իրեն կը մնային միայն շաբաթական 6 դաս բարձրագոյն դասարանի մէջ, ուզեց առիթէն օգուտ քաղելով գոհացում տալ այն բուռն փափաքին, զոր տարիներէ ի վեր կը տածէր Գերմանիա երթալու և իր բանասիրական ուսումները կատարելագործելու. ուստի ուսումնական տարուան սկիզբները տուաւ իր հրաժարականը, զոր Տեսչութիւնս պարտաւորեալ ընդունեց՝ նորա թողած դասերը յանձնելով միւս հայերէնի ուսուցիչ Կ. Մկրտչեանին, որ այդ բարդմամբ կունենար ընդ ամենը շաբաթական միայն 16 դաս։ Սակայն, աւաղ, չարաշուք զուգադիպութեամբ մը Վարժարանս անակնկալի կերպիւ զրկուեցաւ նաև սոյն պաշտօնեայէն։

Հոկտեմբերի 31 ին իր մահկանացուն կնքեց Կ. Մկրտչեան՝ զոհ երթալով 2 ամսէ ի վեր քաղաքիս մէջ ճարակող հնտախտին, որ սոյն ամսոյ վերջերը մարելու վրայ էր եւ իր օրհասական կատաղութեամբ անողորմաբար խլեց տարաբաղդ ընտիր ուսուցիչը իր երամնամեայ առոյգ հասակին մէջ։ Հոկտեմբեր 27ին տուաւ նա իր վերջին դասը, յաջորդ օրը մնաց անկողին եւ այլ եւս չելաւ։

Թաղումը տեղի ունեցաւ անշուք կերպիւ, ինչպէս էին հնտախտի օրերուն մէջ պատահած բոլոր թաղումները։ Գեր. Պատր. Փոխանորդ Սրբազան Հայրը եւ քանի մը քահանայք կատարեցին եկեղեցական արարողութիւնները։ Ներկայ էին Վարժարանիս համայն ուսուցիչք, Կարնեբնակ ընթացաւարտք եւ բարեկամներու ու ծանօթներու բաւական ստուար խումբ մը։ Մարմինը ամփոփուեցաւ Ազգային գերեզմանատան մէջ Վարժարանիս վաղեմի ուսուցիչ ողբացեալ Պօղոս Դելփեանի շիրմին քով։

Մշոյ Ձկյարէթ գիւղէն էր Կ. Մկրտչեան եւ իր ուսմանց ընթացքը նշանաւոր յաջողութեամբ աւարտած էր Էջմիածնայ Ճեմարանին մէջ։ 1886-87 ուսումնական տարեգլխէն սկսեալ Հայերէն, երբեմն ալ ի հարկին այլ ուսումներ՝ կուսուցանէր Վարժարանիս մէջ եւ ստորին դասարանէն սկսելով հետզհետէ բարձրացած էր մինչեւ սոյն ուսումնական տարուան բարձրագոյն դասարանը։

Հանգուցեալը ունէր բանաստեղծական ձիրք և առհասարակ գրելու մեծ կարողութիւն։ Իր արտադրած թէ՛ ինքնուրոյն և թէ՛ թարգմանական բազմաթիւ արձակ և ոտանաւոր գրուածքներուն մէջ

նշանաւոր են յատկապէս իր աշակերտաց ուսման համար յօրինած գողտրիկ ոտանաւորները. և Գերմանացի ականաւոր մանկավարժ Կէհրի հետեւողութեամբ Հայերէն լեզուի ուսուցման համար աշխատասիրած, միայն դժբաղդաբար կիսատ թողած ուղեցոյցները։ Վարժարանիս տներն ու երեկոյթները, Սրտաձորի վրանական կեանքը, Կարնոյ ձմեռն ու չմշկութիւնը, Եփրատն և իր ակունքը (Խաչափայտը), դաշտերն ու լեռները, ձորերն ու հովիտները, ներշնչած են իրեն շատ մը սահուն ոտանաւորներ և կենդանի ու վառվռուն նկարագրականներ, որոնցմէ մէկ քանին առեն առեն երեւնալով լրագրաց, մանաւորապէս «Արեւելք»ի մէջ՝ ընթերցմամբ կը կարդացուէին։ Լուսահոգի Սանասարեանը իր մահուանէն կարճ ժամանակ առաջ Գաղղիոյ Նիս քաղաքը գտնուած առեն կարդալով այդ նկարագրական յօդուածներէն մին, որ կը վերաբերէր Վարժարանիս Ամարանոցի կեանքին, այնչափ գոհունակութիւն և ուրախութիւն զգացած էր, որ ձիթենիէ շինուած ընտիր կաղամար մի իր սարքով նուէր ուղարկեց հեղինակին։ Այդ կաղամարը յետոյ հանգուցեալ Մկրտչեանի ժառանգներուն կողմէ նուէր թողուեցաւ Վարժարանիս, որ իր թանգարանին մէջ կը պահէ զայն այժմ։

Այսպէս ուրեմն Սանասարեան հաստատութիւնը, ցաւալի կորուստ մը ըրաւ այդ երիտասարդ գրագէտ-ուսուցչին մահուամբ։ Անմոռանալի պիտի մնայ նա իր երախտագէտ սաներուն համար, որոնք այնչափ կ՚օգտուէին իր եռանդէն ու կարողութենէն, և իր սիրակցորդ պաշտօնակիցներուն համար, որոնք զրկուեցան անխոնջ աշխատակցէ մը։ Հանգիստ իր ոսկերաց։

Ա. Խաչատրեանի մեկնման և Կ. Մկրտչեանի մահուան պատճառաւ Վարժարանիս 3 բարձր դասարանները մինչև ուսումնական տարուան վերջը զուրկ մնացին Հայերէն լեզուի ուսուցչէ։ Վարչութիւնը ամբողջ տարին մեծ ջանքեր ըրաւ այդ ուսման համար յարմարաւոր անձ մը գտնելու, սակայն համաճարակ հիւանդութեան պարագաներուն բերմամբ և առհասարակ հրապարակին վրայ տրամադրելի լաւ Հայկաբան ուսուցչաց պակասութեան պատճառաւ իր ջանքերն ապարդիւն մնացին այն տարուան համար։

Վարժարանս իր երկոտասանամեայ գոյութեան ընթացքին մէջ այս առաջին անգամն էր որ բացառիկ աղէտի մը ըներմամբ ու-

սուցչի մասին այսպիսի շփոթութեան մէջ ընկաւ. կը յուսանք թէ այս մասին ծնողք ներողամիտ կը լինին։ Հարկ է սակայն յաւելուլ թէ Վարժարանի մը մէջ, ուր ի սկզբանէ անտի Հայերէն լեզուն մասնաւոր հոգածութեան առարկայ եղած է, ուր ամեն առարկայք, բաց ի բարձր դասարաններու օտար լեզուներէն, կաւանդուին Հայերէն լեզուով, և ուր նոյն իսկ կրօնական և պատմական ուսմանց վերաբերեալ դասերուն մէջ գրականութենէ շատ հատուածներ կը կարդացուին կամ կը մշակուին, միակ տարուան մը մէջ յատուկ Հայկաբանի մը պակասութիւնը չէր կրնար այնչափ վնաս պատճառել աշակերտաց, որչափ դուցէ կարծուի ոմանց կողմէ։

Միւս ուսուցիչներէն ուսումնական տարուան վերջը Վարժարանս թողին հետեւեալները.

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ռ. Վիկուրէօ, | Ուսուցիչ Գաղղիերէնի | 3 | տարիէ | ի վեր, |
| Յ. Տիրատուրեան, | Օգնական. Ուսուցիչ | 2 | » | » |
| Գ. Շէհիլէմեան, | » » | 2 | » | » |
| Յ Թիւթիւնճեան, | » » | 1 | » | » |

Ամենքն եւս իրենց պաշտօնավարութեան ամբողջ ընթացքին մէջ ցոյց տուին խղճմտութիւն և յաջողութիւն։ Ուրախութեամբ կը կը յիշենք մանաւորապէս այն փայլուն յաջողակութիւնը, զոր Վարժարանիս ընթացաւարտներէն եղող վերջին 3ը իրենց միւս ընկերներուն նման ցոյց տուին իրենց ուսուցչութեան փորձի տարիներուն մէջ, և տարակոյս չունինք թէ այն տեղերուն մէջ, ուր կերթան նոքա շարունակելու իրենց սկսած ուսուցչական պաշտօնը, կարող պիտի լինին շատ օգտակար ծառայութիւն մատուցանելու իբր դաստու։ Նոյն յոյսն ու վստահութիւնը կը տածենք իրենց միւս այն ընկերներուն վրայ, որք արդէն իբրեւ ուսուցիչ կը գտնուին զանազան տեղեր։

Հրաժարող ուսուցչաց ցանկին մէջ կը յիշենք նաև Մարտիրոս Քէնտիկեանը, որ թէև իւր պաշտօնավարութեան 6 տարիներուն վերջին երկուքին մէջ միայն քարտուղարութեամբ ու հաշուապահութեամբ կզբաղէր, սակայն 1888—89, 89—90 և 90—91 ուսումնա-

*կան տարիներուն մէջ խղճմտութեամբ վարած է նաև Գեղագրութեան եւ Գծագրութեան ուսուցչի պաշտօնը։*

*Ուսուցիչք եւ իրենց աւանդած շաբաթական դասերն են.*

## ՏԵՍՈՒՉՔ

1. **Աբուլեան Գէորգ**, *Դ. ի, Ե. ի և Զ. ի մէջ 2 ական դաս Պատմութիւն և 2 ական Աշխարհագրութիւն, 2 կարգի մէջ 2 ական Ջութակ, ընդամէնը 16 դաս։*

2. **Մատաթեան Յովսէփ**, *Դ. ի, մէջ 3 Գերմաներէն, Ե ի մէջ 1 Բնապատմութիւն, 2 Բնաբանութիւն եւ 2 Տարրաբանութիւնը, Զ. ի մէջ 1 Բնապատմութիւն, 2 Բնաբանութիւն, 2 Տարրաբանութիւն եւ 3 Գերմաներէն. ընդամէնը 16 դաս։*

3. **Սողիկեան Սարգիս**, *Դ. ի մէջ 3 Կրօն, Ե. ի մէջ 3 Կրօն և 3 Գերմաներէն, Զ. ի մէջ 2 Կրօն, Դ. ի Ե. ի եւ Զ. ի մէջ (միացեալ) 1 Երգ, 2 կարգի մէջ 2 ական Դաշնակ. ընդամէնը 16 դաս։*

## ԳԼԽԱՒՈՐ ՈՒՍՈՒՑԻՉՔ

4. **Մկրտչեան Կորիւն** (*մինչև Հոկտ.* 27), *Դ. ի մէջ 2 Հայերէն Աշխարհաբար եւ 2 Հայերէն Գրաբար, Ե. ի մէջ 2 Հայերէն Աշխարհաբար եւ 3 Հայերէն Գրաբար, Զ. ի մէջ 2 Հայերէն Աշխարհաբար, 3 Հայերէն Գրաբար և 2 Եկեղ. Պատմութիւն. ընդամէնը 16 դաս։*

5. **Մէհէմմէտ Շիւքրի էֆ.** *Դ. ի և Ե. ի մէջ 4 ական Տաճկերէն, Զ. ի մէջ 4 Տաճկերէն և 1 Օսմանեան Պատմութիւն. ընդամէնը 13 դաս։*

6. **Ումիկեան Դաւիթ**, *Դ. ի մէջ 2 Թուաբանութիւն, 2 Գրահաշիւ և 2 Երկրաչափութիւն, Ե. ի և Զ. ի մէջ մէկ մէկ Թուաբանութիւն, 2 ական Գրահաշիւ և 2 ական Երկրաչափութիւն. ընդամէնը 16 դաս։*

7. **Վիդուրէօ Ռիշար**, *Ա. ի մէջ 1 Գաղղիերէն, Դ. ի մէջ 3 Գաղղ. Ե. ի մէջ 4 Գաղղ. եւ Զ. ի մէջ 5 Գաղղ. ընդամէնը 13 դաս։*

## ՕԳՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՑԻՉՔ

8. Բրուտեան Տիգրան, *Ա. ի մէջ 4 Տաճկերէն։*

9. Թիւթիւնճեան Յարութիւն, *Ա. ի մէջ 3 Գաղղիերէն, 2 Գեղագրութիւն և 2 Գծագրութիւն, Դ. ի մէջ 1 Գաղղիերէն, ընդամենը 8 դաս։*

10. Ղոյինեան Գրիգոր, *Ա. ի մէջ 2 Երգ, 2 Ջութակ, Դ. ի մէջ 1 Գծագրութիւն, 1 Գեղագրութիւն և 2 Երգ, Ե. ի մէջ 1 Գըծագրութիւն. ընդամենը 9 դաս։*

11. Շէնլէմեան Գրիգոր, *Ա. ի մէջ 2 Աշխարհագրութիւն և 4 Թուաբանութիւն. ընդամենը 6 դաս։*

12. Տիրատուրեան Յարութիւն, *Ա. ի մէջ 3 Կրօն, 4 Հայերէն Աշխարհաբար, 2 Հայերէն Գրաբար, 2 Պատմութիւն եւ 2 Բնագիտութիւն, Դ. ի մէջ 2 Բնագիտութիւն. ընդամենը 15 դաս,*

## ԱՐՀԵՍՏԱՒՈՐ ՈՒՍՈՒՑԻՉՔ

13. Սէյլանեան Սուքիաս, *Արհեստագէտ Հիւսնութեան եւ*

14. Ստէփանեան Յակոբ, *Արհեստագէտ Կօշկարարութեան, գրեթէ ամբողջ օրը Արհեստանոցի մէջ կառաջնորդէին արհեստ սորվող կարգերուն։*

*Ն. Մկրտչեանի մահուամբ բաց մնացած շաբաթական 16 դասերէն 12 ը Նոյեմբերի 24 էն սկսեալ 4 ուսուցիչք կարողացան հետեւեալ կերպիւ բաժնել իրենց մէջ։*

Յ. Մատաթեան, *մէկ մէկ դաս Գերմաներէն Դ. ի և Զ. ի մէջ և 1 դաս Բնագիտութիւն Ե. ի մէջ։*

Գ. Ոսմիկեան, *մէկ մէկ դաս Թուաբանութիւն Դ. ի Ե. ի և Զ. ի մէջ։*

Ռ. Վիգուրէօ, *մէկ մէկ դաս Գաղղիերէն Դ. ի Ե. ի և Զ. ի մէջ։*

Մ. Շիւֆրի էֆ. » » *Տաճկերէն* » » » » »

*Տեսուչներէն երկուքը աշակերտաց վրայ յարատեւ և կատարեալ հսկողութիւն մը ի գործ դնել կարողանալու համար ըստ վաղեմի կարգադրութեան կը բնակէին Վարժարանը, մին՝ Հին շէնքին, և միւսը՝ Նոր շէնքին մէջ։ Օգնական ուսուցիչք ևս, բաց ի Տ. Բրուտեանէն, կը բնակէին Վարժարանը, իսկ գլխաւոր Ուսուցիչք՝ դուրսը։*

*Վարժարանին մէջ բնակող Օգնական Ուսուցիչք կը կատարէին նաեւ Վերակացութեան պաշտօն՝ կարգաւ օրապահ լինելով։*

*Ուսուցիչք կանոնաւորապէս աւանդած են իրենց դասերը։ Բացակայութիւնք իրենց բնաւոր պատճառներով հանդերձ, ինչպէս նաեւ տրուած դասերուն տարեկան ընդհանուր գումարները կերեւնան հետեւեալ ցուցակէն.*

| ՈՒՍՈՒՑԻՉ | Ռոճէր | Աւելի տուած | Պակսեցաւ | | | Ընդ ամէնը եղած տուած |
|---|---|---|---|---|---|---|
| | | | Հիւանդութեան պատճառաւ | Վարժարանին գործի պատճ. | Անձնական գործի պատճ. | |
| *Ապուլեան Գ.* . . . . | 465 | — | — | — | — | 465 |
| *Մատաթեան Յ.* . . . | 465 | 66 | 24 | 3 | — | 504 |
| *Սողիկեան Ս.* . . . . | 465 | — | — | — | — | 465 |
| *Մկրտչեան Կ.* ✝ . . | 434 | — | 363 | — | — | 71 |
| *Շիւքրի էֆէնտի* . . | 347 | 58 | 102 | — | — | 303 |
| *Ումիկեան Գ.* . . . . | 465 | 87 | 45 | — | — | 507 |
| *Վիգուրէօ Ռ.* . . . . | 380 | 78 | 36 | — | 7 | 415 |
| *Բրուտեան Տ.* . . . . | 113 | — | — | — | — | 113 |
| *Թիւթիւնճեան Յ.* . . | 237 | — | — | — | — | 237 |
| *Պօյինեան Գ.* . . . . | 258 | — | — | — | — | 258 |
| *Ճէհլէմեան Գ.* . . . . | 170 | — | — | — | — | 170 |
| *Տիրատուրեան Յ.* . . . | 450 | — | — | — | — | 450 |
| *Գումար* | 4249 | 289 | 570 | 3 | 7 | 3958 |

Պարտաւորիչ ուսումները *իւրաքանչիւր դասարանի վրայ բաշխուած էին հետեւեալ կերպիւ ։*

| ԴԱՍԱՐԱՆ | Կրօն | Եկեղ. Պատմութիւն | Հայերէն Աշխարհաբար | Հայերէն Գրաբար | Տաճկերէն | Գաղղիերէն | Գերմաներէն | Պատմութիւն | Աշխարհագրութիւն | Բնապատմութիւն | Տարրաբանութիւն | Բնագիտութիւն | Թուաբ. և Տօմարակ. | Գրչագրութ. | Երկրաչափութիւն | Գեղագրութիւն | Գծագրութիւն | Երգ | Գումար |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ա. | 3 | — | 4 | 2 | 4 | 4 | — | 2 | 2 | 2 | — | — | 4 | — | — | 2 | 2 | 2 | 33 |
| Դ. | 3 | — | 2 | 3 | 4 | 4 | 3 | 2 | 2 | 2 | — | — | 2 | 2 | 2 | 1 | 1 | 2 | 35 |
| Ե. | 3 | — | 2 | 3 | 4 | 4 | 3 | 2 | 2 | 1 | 2 | 2 | 1 | 2 | 2 | — | 1 | 1* | 35 |
| Զ. | 2 | 2 | 2 | 2 | 5 | 5 | 3 | 2 | 2 | 1 | 2 | 2 | 1 | 2 | 2 | — | — | 1 | 36 |
| | 11 | 2 | 10 | 10 | 17 | 17 | 9 | 8 | 8 | 6 | 4 | 4 | 8 | 6 | 6 | 3 | 4 | 6 | 139 |

*Միացմամբ կը նուազին* 2

*Կը մնան շաբաթական դաս* 137

*Վարժարանին ուսումնական բաժնին վերաբերեալ կամաւոր* ուսումներէն Անգղիերէնը *այս տարի ևս չաւանդուեցաւ հարկ եղած թուով, փափաքողներ չը գտնուելուն համար ։*

Դաշնակի *դասընթացքին կը հետեւէին* 7 *թոշակաւոր աշակերտներ, բաժնուած* 2 *կարգերու, որոնց ստորինին մէջ կային* 5 *հոգի Ա. Դասարանէն, և բարձրագոյնին մէջ՝* 2 *հոգի Դ. Դասարանէն ։*

Ջութակի *դասընթացքին կը հետեւէին* 16 *թոշակաւոր և* 12 *ձրիավարժ աշակերտներ, ընդամէնը* 28 *հոգի, բաժնուած* 3 *կարգերու, որոնց Առաջինին (ստորինին) մէջ կային* 11 *հոգի Ա. Դասարանէն, Երկրորդին մէջ՝* 7 *հոգի,* 4*ը Դ. և* 3*ը Ե. Դասարանէն, և Երրորդին մէջ՝* 10 *հոգի,* 4*ը Դ.* 1*ը Ե. և* 5*ը Զ. Դասարանէն ։*

Թէ՛ դաշնակածուներուն և թէ՛ ջութակածուներուն իւրաքանչիւր կարգը կառնէր շաբաթը 2 դաս, և կընէր օրը իբր 1 ժամ կըրթութիւն՝ ազատ և կամ ստրատղութեան յատկացեալ ժամերուն մէջ։

---

Աշակերտաց գործածութեան յատկացեալ **ձեռնարկները** գրեթէ միևնոյն գրքերն էին, որոնք յիշուած են նախորդ Տեղեկագրին մէջ։

---

**Առաջին կիսամեկի քննութիւնք**, որոնք ներքին էին, տեւեցին Փետրվար 25 էն մինչև 27, ընդ ամէնը 3 օր։ Քննութիւնք դասարանական ըլլալով տեղի կունենային միևնոյն ժամանակ բոլոր դասարաններուն մէջ, և պատրաստուած կարգացուցին համաձայն սկսելով առաւօտեան ժամը 8, 10 ին ըստ Եւրոպացւոց՝ կը տեւէին մինչև կէս օր։ Իւրաքանչիւր դասարանի մէջ ամեն օր 3 էն 4 դասերն իրարու ետեւէ կառնուէին 50 ական վայրկենի տեւողութեամբ եւ 10 ական վայրկենի ընդմիջմամբ։

**Տարեկան հրապարակային քննութիւնք** տեւեցին Յունիս 28 էն մինչև Յուլիս 3, ընդամէնը 6 օր։ Պատրաստուած կարգացուցին համաձայն, որմէ օրինակ մը ուրիշ անդամներու պէս փակցուած էր Վարժարանին մեծ դրան ներսի կողմը, ունկնդրել ուզող հասարակութեան համար, տեղի կունենային կէսօրէն առաջ, ըստ Եւրոպացւոց ժամը $7\frac{1}{2}$ էն մինչև $9\frac{3}{4}$, և դասարանական ըլլալով՝ ամեն օր իւրաքանչիւր դասարան ընդհանրապէս կունենար 2 առարկայ, որոնք կը տեւէին մէկ մէկ ժամ, և 1 քառորդ ժամու ընդմիջմամբ կառնուէին իրարու ետեւէ։

Քննութեանց կ'ունկնդրէին ամեն օր տեղւոյս աշակերտաց ծնողք կամ խնամակալք և հասարակութենէն բազմաթիւ անձինք։ Քննութեանց ներկայ գտնուելու շնորհն ըրին նաև Գեր. Պատր. Փոխանորդ Սրբազան Հայրը, Գաւառիս Կրթական ժողովի (Մէարիֆի) Ազն. Նախագահը, քաղաքային Իտատիյէի Ազն. Տնօրէնը, Վարժարանիս Պատ. Հոգաբարձութիւնը և Գաւառական Վարչութեան Պատ. Ուսումնական Խորհուրդի անդամներէն ոմանք։

Քննութեանց վերջին ժամէն յետոյ, որու նիւթն էր ընթացաւարտ դասարանի կրօնական ուսմունքը, կրօնուսոյցը պարագային յարմար վերջաբանով մը Տեսչութեան և Ուսուցչական մարմնոյ կողմէ հրաժեշտ տուաւ ընթացաւարտներուն և փակեց ուսումնական տարին։ Ցաջորդ օրը (Կիրակի) Եկեղեցւոյն մէջ Ս. Պատարագէն յետոյ ընթացաւարտք ըստ սովորութեան հոգեհանգստեան պաշտօն կատարել տուին լուսահոգի Հիմնադիր Բարեբարին համար։ Հանդիսադիր Պատրիարքական Փոխանորդ Սրբազանը արարողութենէն յետոյ դառնալով ընթացաւարտներուն, որոնք ատեանին մէջտեղ խմբուած էին սեւապատ սեղանին շուրջը, հայրական սրտաշարժ խրատներ ուղղեց նոցա. յիշեցուց թէ այսուհետեւ իրենք են իրենց անձին տէրն ու պատասխանատուն, մինչդեռ մինչեւ ցարդ Վարժարանն էր որ այդ հոգը կը կրէր իրենց համար, ուրեմն պէտք է որ ամենայն մտադրութեամբ ու արթնութեամբ հսկեն այսուհետեւ կենաց մէջ իրենց ընելիք ամեն մէկ քայլին վրայ, պէտք է որ, ըսաւ, աշխարհի մրրկածուփ ովկիանին մէջ, ուր կերթան նետուելու, իրենց կենաց նաւուն համար իբրեւ փրկարար ղեկ միշտ անեղծ ու անաղարտ պահեն իրենց ստացած կրօնական-բարոյական դաստիարակութիւնը. ապա օրհնեց զիրենք ու իրենց ծնողները, Հիմնադիր-Բարեբարի յիշատակը, Վարժարանիս Վարչական մարմինները ու Ուսուցչական խումբը եւ պահպանիչով փակեց հանդէսը՝ աղօթելով վասն կենաց Օգոստափառ Կայսեր։

---

Աշակերտք ամենքն ալ փոխեցին իրենց դասարանները, միայն թէ նոյանէ 15 հոգի թէ՛ տարուան ընթացքին մէջ և թէ՛ քննութեանց միջոցին այս կամ այն ուսման մէջ տկար գտնուած լինելով՝ պատուէր ստացան արձակուրդի միջոցին յատկապէս պարապելու նոյն ուսումներով։

Այդ 15 աշակերտներէն 6ը Ա. էն, 8ը Դ. էն և 1ը Ե. էն էին։

---

Իրենց ուսմանց ընթացքն աւարտեցին հետեւեալ 17 աշակերտք․

| | | | |
|---|---|---|---|
| 1. | Արծնեան Արամ | Կարնեցի , | Ձրիավարժ |
| 2. | Պաքալեան Սեդրոս | Սեբաստացի , | Թոշակաւոր |
| 3. | Դանիէլեան Դերենիկ | Երզնկացի , | » |
| 4. | Թամթիկեան Արամ | » | » |
| 5. | Խոփչեան Մանուկ | Տրապիզոնցի , | » |
| 6. | Համէսեան Վահան | Կարնեցի , | » |
| 7. | Հէյրանեան Գէորգ | Տփղիսեցի , | » |
| 8. | Հէյրանեան Թորոս | » | » |
| 9 | Ծանճիկեան Սարգիս | Արաբկիրցի , | » |
| 10. | Միսաքեան Յարութիւն | Խարբերդցի , | » |
| 11. | Նազարեան Վահան | Կարնեցի , | » |
| 12. | Զարդրեան Յովհաննէս | Էնկիւրիւցի , | Ձրիավարժ |
| 13. | Զոխաճեան Տիգրան | Կարնեցի , | » |
| 14. | Պօտոսեան Ռուբէն | Շապին Գարահիսարցի | Թոշակաւոր |
| 15. | Սարաֆեան Ռուբէն | Կարնեցի , | Ձրիավարժ |
| 16. | Տ.Յարութիւնեան Բարունակ | Վանցի , | » |
| 17. | Օհաննեան Հրաչեայ | Պանտրմացի , | » |

Վերոյիշեալ 6 ձրիավարժք իրենց բարոյական պարտաւորութեան համաձայն ուսուցչութեան պաշտօն պիտի կատարեն իրենց ծննդեան երկիրներուն մէջ կամ այլուր, և չենք տարակուսիր թէ իրենց երիտասարդ ընկերներուն պէս եռանդ ու յաջողակութիւն ցոյց պիտի տան այդ դժուարին, սակայն վսեմ պաշտօնին մէջ։

---

Արհեստանոցին մէջ կաւանդուէին Կազմարարութեան եւ Հիւսնութեան ճիւղերը ուսուցչաց ցանկին մէջ անկէ առաջ յիշուած 2 Արհեստապետ-ուսուցչաց առաջնորդութեան ներքև։

Վարժարանի Ուսումնական բաժնին վերաբերեալ աշակերտներէն՝ Կազմարարութեան ճիւղին կը հետեւէին 11 թոշակաւորներ, որոնց 3ը Ա. էն, 6ը Դ. էն և 2ը Զ. էն էին. իսկ Հիւսնութեան ճիւղին կը հետեւէին 8 թոշակաւոր և 2 ձրիավարժ աշակերտներ, ընդամենը 10 հոգի, որոնց 1ը Ա. էն, 1ը Դ. էն, 4ը Ե. էն և 4ը

Զ. էն էին։ Թէ՛ Կոպղարալըները և թէ՛ Հիւմները ամեն օր մէկ մէկ ժամ կը պարապէին Արհեստանոցին մէջ։

Արհեստանոց կը յաճախէին նաև 8 ի չափ բուն արհեստաւոր աշակերտներ, ամենքն ալ ձրիավարժ։ Ասոնցմէ մին գիւղացի լինելով արդէն 4 տարիէ ի վեր իբրև գիշերօթիկ կը գտնուի Վարժարանիս մէջ, միւսները տեղացի լինելով՝ ցերեկօթիկ էին։ Այդ աշակերտները՝ որոնք իրենց նախնական ուսումը առած են ազգային Նախակրթարաններու մէջ, առանց մասնակցելու Վարժարանիս Ուսումնական բաժնի դասերուն՝ ամբողջ օրը կը պարապէին միմիայն Արհեստով, որու ընթացքը այդպիսեաց համար կը տեւէ սովորաբար 4 տարի։ Ցերեկօթիկ արհեստաւորները Վարժարանիս Վարչութեան և իրենց միջև եղած յատուկ կարգադրութեան մը համաձայն ի միջի այլոց կստանային ձրի նախաճաշ ու ճաշ և իրենց շինած իրերուն զուտ շահին % ին 25 ը։

Այս տարի ևս աշակերտք առ հասարակ մեծ յաջողութիւն ցոյց տուին իրենց արհեստական պարապմանց մէջ. Նոյն թէ՛ երկաթէ և թէ՛ փայտէ շինած աշխատանքները իրենց գեղեցկութեամբ ու ճշդութեամբ ուշադրութիւն կը գրաւէին։

Վարժարանիս Գործատան մէջ, որ Արհեստանոցի մէկ մասը կը սեպուի, այս տարի ևս ձմրան ամիսներուն մէջ 10 ի չափ աշակերտք, որոնք ուրիշ կամաւոր ուսմանց (Երաժշտութեան կամ Արհեստի) դասերուն չէին մասնակցեր, Օգնական-Ուսուցիչ Յ. Թիւթիւնճեանի առաջնորդութեամբ կազմեցին Մատենադարանիս և կամ աշակերտաց ամենօրեայ գործածութեան վերաբերեալ բազմաթիւ գրքեր։

---

Աշակերտաց վարքն ու բարքը ընդհանրապէս շատ գոհացուցիչ էր, միայն թէ այս տարի ևս գտնուեցան մէկ-երկու հատակաւոր աշակերտներ, որոնք քիչ մը կը դժուարանէին իրենց դաստիարակութեան համար տարուած աշխատանքը։ Դոքա ատեն ատեն գաղտագողի փորձեր կ'ընէին կարգապահութեան կամ օրինապահութեան սահմաններուն մէջ չմնալու, և կը գտնուէին երբեմն այնպիսի վարմանց մէջ, որ չէր համապատասխաներ երախտագէտ աշակերտէ մը պահանջուած յատկութիւններուն։ Տեսչութիւնը միւս ուսուցչաց ա-

ջակցութեամբ ամեն ջանք ըրաւ զանոնք ուղղելու, և երբեմն խստութիւն բանեցնելով, երբեմն հայրական ներողամտութեամբ վարուելով, յաջողեցաւ այդ մասին բաւական արդիւնք ձեռք բերել։ Կը սիրենք յուսալ թէ այդ աշակերտք աշխարհի դժուարին կեանքին մէջ, որ կը յաջորդէ իրենց դպրոցական ոսկեայ ժամանակին, զգացեալ որով պիտի յիշեն իրենց առած հայրական եւ եղբայրական անկեղծ խրատները, պիտի ջանան արժանաւոր կերպիւ բեղմնաւորել իրենց մատակարարուած անսահման դաստիարակութիւնը, և այդպէսով հեռուէն աւելի գոհունակութիւն ու մխիթարութիւն պիտի պատճառեն զիրենք միշտ սիրող դաստիարակներուն։

Երբ դպրոցական տեղեկագրի մը մէջ ակնարկութիւններ կընենք մէկ երկու աշակերտաց ոչ գոհացուցիչ նկարագիրներու մասին և այսպէսով Վարժարանին կեանքը իւր ամեն երեւոյթներով կը պարզենք ընթերցողաց առջեւ, անկեղծութեան պարտք մը կատարած կը լինինք, սակայն չենք կարծեր թէ ասով խելահաս ծնողներուն և առհասարակ կրթութեան դժուարին գործէն հասկցող անձերուն իրաւունք տուած կը լինինք որ ելնեն մեղադրեն Վարժարանս՝ յենլով այնպիսի պակասութեանց վրայ, որոնք աշակերտական կեանքէ անբաժան են՝ նոյն իսկ մանկավարժութեան օրրան հանդիսացող քաղաքակիրթ երկիրներու ամենէն հռչակաւոր և ամենէն բարեկարգ Վարժարաններուն մէջ։

Այսպիսի կրթական հաստատութիւն մը դժուարին կոչում մը ունի զանազան տեղերէ եկող, զանազան տեսակ ոչ միշտ փայլուն բնաւորութեանց ու միտմանց տէր եղող տղայք կրթելու և ազնուացնելու, սակայն ինչպէս ոչ մի նմանօրինակ հաստատութիւն, այնպէս ալ սա չի կրնար հրաշք գործել և այնպէս ընել որ աշակերտական զանցառութիւններ ու յանցանքներ բոլորովին անգոյ լինին իւր նուիրական յարկին ներքեւ։ Ուրեմն ուղիղ դատողութեան բոլորովին հակառակ վարուած կը լինի նա որ ուզէ այս կամ այն աշակերտի վատթարութիւնն վերագրել Վարժարանի տկարութեան։ Վարժարանը այն ատեն միայն կրնար հրեշտակաց բնակարան լինել, երբ այն ժողովուրդը կամ ընկերութիւնը, որու զաւակները իրեն կը յանձնուին, զարմանալի բացառութիւն մը կազմելով աշխարհի բոլոր ազգերուն մէջ՝ բնաւ չունենար իր մէջ արմատացած յոռի ունակու-

թիւններ ու հիւանդութիւններ, որոնցմէ մատաղ սերունդը ամեն տեղ այնչափ կանուխէն ու այնչափ դիւրաւ կ'ազդուի, և որոնց դէմ ամենէն հնարիմաց մանկավարժութիւնն ու ամենէն անստգիւտ դաստիարակութիւնն ալ կրնան երբեմն անզօր մնալ։ Ի՜նչ մեղք ունի Սանասարեան Վարժարանը, երբ, օրինակի համար, գտնուեր են մէկ երկու աշակերտներ, որոնք իրենց ծնողաց տներուն մէջ ծխելու մասին ստացած վարժութիւնը փորձեր են գաղտագողի շարունակել նաև իրենց դպրոցական կեանքին մէջ, թէև, ինչպէս յայտնի է, ի սկզբանէ անտի այդ մասին ոչ միայն խիստ հսկողութիւն կը լինի Վարժարանիս մէջ, այլ նաև. Տեսուչք և գրեթէ բոլոր ուսուցիչք՝ ինչպէս ուրիշ կէտերու՝ այնպէս ալ ասոր մէջ խրատներուն միացնելով գործնական օրինակը, իրենց պաշտօնավարութեան առաջին օրէն սկսեալ բոլորովին հրաժարեր են ծխելէ։ Երբ նոյն իսկ դաստիարակութեան ամենէն հզօր միջոցներէն մին, ուսուցչաց անձնական բարի օրինակը, երբեմն այս կամ այն աշակերտին վրայ չազդեր պէտք եղածին պէս, յայտնի է թէ չարիքին շարժառիթը Վարժարանական մթնոլորտէն դուրս պէտք է փնտռել։

Հարկ չկայ ըսելու թէ այս Վարժարանը իբրև դաստիարակող կամ կրթող Հաստատութիւն միայն ուսմունք՝ չի մատակարարեր, այլ կ'աշխատի մանկավարժութեան տուած ամեն միջոցներով ընտիր նկարագիր կազմել աշակերտին մէջ, և գոհութեամբ կը տեսնէ թէ իւր այդ ջանքերուն շնորհիւ աշակերտք առհասարակ գովելի վարքի տէր են, և ամեն ուսումնական տարի մատով ցոյց տրուելու չափ սակաւաթիւ են նոցա մէջ այն երեւոյթները, որոնք կամ՝ բոլորովին անուղղայ կը մնան կամ՝ զգալի կերպիւ կը դժուարացնեն իրենց դաստիարակներուն աշխատանքը։ Տարակոյս չկայ սակայն թէ ինչպէս առհասարակ կրթութեան ամբողջ գործը, այնպէս ալ աշակերտական այդպիսի անհարթ բնաւորութեանց ուղղութեան համար թափուած ճիգը կրնայ աւելի արդիւնաւոր լինել, եթէ բոլոր ծնողք և ընկերութիւնը ամեն պարագայի մէջ նուիրեն Վարժարանին իրենց բարոյական աջակցութիւնը։ Վարժարանս, ինչպէս քաջ գիտեն զայն մօտէն ճանչցողները, իւր մատակարարած դաստիարակութեամբ միշտ կ'աշխատի ընկերութեան և մանաւորապէս ծնողաց նկատմամբ յարգանաց և սիրոյ ոգի ներշնչել աշակերտներուն. իրաւունք ունինք ուրեմն պա-

հանջելու որ ծնողք ու ընկերութիւնն ալ նոյն ընթացքը բռնեն Վարժարանին նկատմամբ, և միշտ բարձր ու պատկառելի պահեն նորա հեղինակութիւնը, առանց որոյ անհնար է ապաքէն արդիւնաւոր կերպիւ ներգործել աշակերտին վրայ։ Որչափ ալ զօրաւոր լինի Վարժարան մը, դարձեալ շատ ու շատ պէտք ունի այդ արտաքին օգնութեան, և միայն հայ վարժարանն ու հայ դաստիարակը չեն որ կը կարօտին անոր, այլ մեզմէ անհամեմատ աւելի զարգացած ազգերու վարժարաններն ու մանկավարժներն իսկ իրենց դպրոցական տեղեկագիրներուն և առհասարակ իրենց բերանացի ու գրաւոր կրթական տեսութիւններուն մէջ չեն դադարիր շեշտելէ և քարոզելէ այդ ծանրակշիռ պէտքը։

Ա՛յն ծնողաց և ընկերութեան այն անդամոց քով, որոնք իրենց ընկած բարոյական աջակցութիւնը լիովին կը մատուցանեն Վարժարանին, ցաւալի է տեսնել երբեմն այնպիսիները, որոնք իրենց սեպուհ պարտաւորութեան ճիշդ հակառակը կը գործեն՝ երբ միամտաբար կամ անհոգաբար առանց երբեք քաշուելու տեսակ տեսակ ձախող դատողութիւններ կընեն աշակերտաց առջեւ Վարժարանին կամ նորա պաշտօնէից նկատմամբ. աւելի վատ զարմանալի դիւրահաւանութեամբ կանսան այն խօսքերուն, զորս գուցէ այս կամ այն ծոյլ, ապերախտ և ըմբոստ աշակերտը իւր վատթարութիւնը ծածկելու կամ վիրաւորուած սխալ փառասիրութիւնը գոհացնելու համար կը ժայթքէ իւր մտաւորական ու բարոյական ծնողներուն դէմ։ Այդ կերպ վարուող ծնողք և ընկերութեան անդամք ո՛չ ապաքէն ուղղակի կամ անուղղակի մատաղ սերունդին մէջ կը պաշտպանեն ու կը քաջալերեն պժգանաց արժանի ապերախտութիւնն ու անհնազանդութիւնը, և այսպէս իրենք իրենց ձեռքով կը զրկեն իրենց սրտի հատորներն ու ազգին յոյսերը մանկավարժական օրէնքներուն համապատասխանող կրթութեան մը բարերար ազդեցութենէն։

---

Աշակերտաց առողջական վիճակը, որ, ինչպէս ցոյց տուած ենք նախորդ Տեղեկագրին մէջ, առհասարակ փայլուն եղած է, այս տարի բնականաբար սովորականէն աւելի մեծ խնամոց ու հոգածութեան առարկայ դարձաւ՝ Օգոստոսի վերջերէն սկսեալ 3 ամսի չափ

քաղաքիս և շրջակայից մէջ տիրող հնտախտին պատճառաւ։ Տեսչու-
թիւնն ամեն կերպ զգուշական միջոցներ ձեռք առաւ. աջակցութեամբ
տեղւոյս քարանթինայի տեսուչ Տօքթէօր Գուլթի, որ ուսումն· տար-
ուանս սկիզբէն պաշտօնական բժիշկ նշանակուեցաւ Վարժարանիս և
ամեն օր կ'այցելէր աստ։ Յատուկ ուշադրութիւն ընծայուեցաւ աշա-
կերտաց սնունդին. միրգ ու բանջարեղէն վերցուած էին կերակուր-
ներու ցանկէն, ճաշին ու ընթրիքին միայն բրնձեղէն կերակուր ու միս
կը մատակարարուէր և առաւօտեան թէյէն զատ երեկոյին եւս թէյ
կը տրուէր։ Սենեակները, մանաւորապէս դասարաններն ու ննջա-
րանը, յաճախ լուացուեցան և ծծումբի ու փենական թթուի միջո-
ցաւ հականեխուեցան։ Աշակերտաց քնոյ ժամերը շատցուեցան և
պարապմունքները թեթև բռնուեցան։ Դուրսի հետ յարաբերութիւնք
ըստ կարելւոյն սահմանափակուեցան և սովորական շրջագայութիւնք
դադրեցան։ Տեղի ունեցաւ նաև յոյժ կարեւոր անօրէնութիւն մը,
որ ոչ միայն համաճարակի միջոցին օգտակար եղաւ, այլ նաև ամեն
ժամանակուան համար Վարժարանին առողջապահիկ կարգադրու-
թեանց շարքին մէջ նշանաւոր տեղ մը կը գրաւէ, այն է՝ Վարժարանիս
շրջապատ գետնին մէկ անկիւնը յատուկ փոսան մը շինութիւնը։
Երկարամեայ փորձառութեամբ տեսնուած էր որ դուրսէն գնուած
հացը երբեմն երբեմն չէր ունենար պէտք եղած ընտիր որակութիւնը
և կը ներկայացնէր նաև ուրիշ անպատեհութիւններ, որոնք կսկսէին
աւելի մեծ չափով զգալի դառնալ տարուանս համաճարակին և սովի
մօտիկ վիճակ մը ներկայացնող սղութեան երեսէն։ Այդ ամեն ան-
յարմարութիւնք վերցան նորաշէն փուռին միջոցաւ, որի մէջ նոյեմբեր
ամսէն սկսեալ ամբողջ տարին ընտիր հաց կը մատակարարուէր Վար-
ժարանիս շտեմարանին մէջ տարիներէ ի վեր կանխատեսութեամբ
պահուած ցորենէն։

Շնորհիւ այս ամեն զգուշութեանց ու առողջապահիկ կարգա-
դրութեանց, ինչպէս նաև Վարժարանիս մեկուսացեալ դիրքին ու
ընտիր ջրին, համաճարակի ամբողջ միջոցին աշակերտաց մէջ նշանա-
կելի հիւանդութիւն մը տեղի չունեցաւ երբեք։ Կը պատահէր երբեմն
որ տղայ մը բռնուելով խիստ աննշան փորացաւէ մը կամ գլխացաւէ,
որուն ուրիշ ատեններ կարեւորութիւն չէր տար, կսկսէր կասկա-
ծիլ ու վախնալ. այդ պարագային մէջ Տեսուչք անմիջապէս, քանի

չանի անգամ նոյն իսկ գիշերուան մէջտեղ, բերել կու տային Վարժարանիս բժիշկը, որ կը հաստատէր վախցուած հիւանդութեան գոյութիւն չունենալը և կը հանգստացնէր աշակերտները։

Շնորհապարտութեան զգացումներով կը յիշենք այստեղ թէ Կուսակալատունը՝ ինչպէս միշտ այնպէս ալ այս տագնապի միջոցին իր հայրական հոգածութեան առարկայ ընելով Վարժարանը, փութաց հնդախտի վերաբերեալ տրուած հրահանգներ և մեծ քանակութեամբ զանազան դեղօրայք ուղարկել։

Համաճարակէն յետոյ ևս մինչև տարւան վերջը աշակերտաց առողջական վիճակը յոյժ գոհացուցիչ էր. միայն թէ Ա. Դասարանէն տղայ մը ժանտատենդով բռնուեցաւ և քիչ մը ատեն սկսաւ մտահոգութիւն պատճառել, սակայն բարեբաղդաբար վտանգէն ազատեցաւ։ Ուրիշ քանի մը թեթև հիւանդութիւններ ևս շուտով դարմանուեցան։

---

Վարժարանիս Ներքին կեանքը նախորդ Տեղեկագրին մէջ ընդարձակօրէն նկարագրած լինելով՝ այդ մասին համառօտ կանգ-նինք ներկայիս մէջ, որ պարագաներու բերմամբ նախորդին հետ միասին կը հրատարակուի։

Սովորական չքնաղութեամբ ու զուարթութեամբ այս տարի ևս կատարուեցան Նոր Տարուան, Ս. Ծննդեան, Բարեկենդանի եւ Ս. Զատկի հանդէսները։ Երկու բարձր դասարաններու աշակերտք Նոր Տարուան երեկոյին նշանակելի յաջողութեամբ ներկայացուցին ի միջի այլոց Տաճկերէն զաւեշտ մը և Մոլիէռի Le Médecin malgré lui կատակերգութիւնը գաղղիական պատշաճ փոփոխութիւններով։

Մայիս 19 ին, ըստ սովորութեան, տօնուեցաւ Լուսահոգի Բարերարին մահուան տարեդարձը, որու առթիւ Պատրիարքական Փոխանորդ Սրբազան Հայրը Եկեղեցւոյն մէջ հանդիսաւոր Ս. Պատարագ մատոյց և Հոգեհանգստեան պաշտօն կատարեց։ Նոյն օրը Վարժարանիս Հիւրանոցին մէջ զետեղուեցաւ Սանասարեանի մարմարեայ ընտիր արձանը, որու պատրաստութեան համար համայն ուսուցիչք աշակերտք ժամանակին իրենց մէջ հանգանակած էին 175 Օսմ. ոսկ

Մեծ ոգևորութեամբ տօնուեցան երկրիս Մեծանուն Վեհ

պէտ Օգոստափառ Սուլթան Ապտ-Իւլ-Համիտ Բ. Խանի Ծննդեան եւ Գահակալութեան երջանկայեց տարեդարձները։ Վարժարանս ինչպէս միշտ այնպէս ալ այս առիթներով պատշաճաւոր կերպիւ ի վեր հանեց Ոսմանեան Ինքնակալին նկատմամբ իւր մէջ տիրող շնորհապարտութեան և հաւատարմութեան ջերմ զգացումները։

Տարուան ընթացքին մէջ, ի բաց առեալ հնտախտի ամիսները, աշակերտք ուսուցչաց հետ ի միասին կատարեցին զբօսալի շրջագայութիւններ, և ուրիշ տարիներու պէս առիթ ունեցան Կօշկօշան կոչուած քարավազ պաղ ջրին մէջ մեծ հրճուանքով լողանալու և կազդուրուելու։ Այդ շրջագայութիւնք մասնաւոր քաղցրութիւն մը ունէին այն աշակերտաց համար, որոնք կը պատրաստուէին քանի մը շաբաթէն հրաժեշտ տալու դպրոցական երջանիկ կեանքի մը, որ սրտի ու մտքի խնամեալ կրթութեան մը հետ իրենց այնչափ անգամ առիթ տուած էր այդպիսի սիրուն, զուարթ ու առողջարար շրջագայութիւններ կատարելու։

Ձմրան հանգստեան մէջ այս տարի եւս չպակսեցաւ չմշկութեան անմեղ մարզանքը, զոր աշակերտք և ուսուցիչք Դեկտեմբերի վերջերէն սկսեալ մինչեւ Փետրուարի կէսը կատարեցին Վարժարանի ընդարձակ և ընտիր չմշկավայրին վրայ։ Առաջին անգամ լինելով այդ ձմեռ Տեսուչք Գերմանիայէն բերել տրուած լաքար (ski) նետով կամ ձնկօշիկներով շաժնելու փորձեր կատարեցին՝ աշակերտաց մէջ ձմեռնային այդ նոր ու առողջարար զբօսանաց գաղափարն ու սէրն եւս տարածելու։

Բայց թէ զբօսանքներուն ու հանգիստներուն պսակը կը կազմէր այս տարի եւս այն վրանական կեանքը, զոր Ամառնային Արձակուրդի միջոցին Վարժարանի մնայուն մօտ 40 աշակերտք իրենց գրեթէ բոլոր ուսուցիչներուն հետ վայելեցին Սրտաձորի Ամարանոցին մէջ։

Ամառնային այդ օդափոխութիւնը, որուն նախապատրաստութիւնք արդէն Յուլիս ամսի 17 ին սկսած էին տեսնուիլ, տեւեց նոյն ամսի 21 էն մինչեւ Սեպտեմբերի 4 ը։ Ամբողջ ժամանակը անցաւ խաղաղ և առանց որեւէ անախորժ դէպքի կամ հիւանդութեան։ Երկինքն եւս, որ, Կարնոյ բարձրաւանդակին վրայ ամրան այդ ամիսներուն մէջ, ինչպէս նաեւ ամբողջ աշունը, առ հասարակ կը պահէ իւր

միօրինակ ջինջ ու պայծառ կապոյտը, հազիւ մէկ երկու անգամ թեթեւ կերպիւ թրջեց վրանները։ Ապահովութիւնը կատարեալ էր շնորհիւ Բարեխնամ կառավարութեան, որ այս անգամ եւս բարեհաճած էր յատուկ ոստիկան մը շնորհել՝ վրաններուն 10ի չափ հայ կամ թուրք պահապաններուն հետ գիշեր ցերեկ հարկ եղած հսկողութիւնն ի գործ դնելու համար։

Զմոռնանք յիշելու թէ ինչպէս ամեն տարի, այնպէս ալ այս անգամ Ամարանոցի կեանքը կանոնաւորուած էր յատուկ ժամանակացոյցով մը, որ աշակերտաց համար կը տրամադրէր օրական 3 ժամու չափ ուսումնական զբաղմունք։ Այդ զբաղմանց մէջ կարեւոր տեղ մը գրաւեցին Գերմաներէն լեզուի գործնական վարժութիւնք, զորս բարձրագոյն դասարանի աշակերտք ամեն օր իրենց ուսուցչին առաջնորդութեամբ կը կատարէին վրանի տակ և կամ շրջագայութեանց միջոցին։ Չենք կրնար այստեղ չդիտել թէ ո՛րչափ սխալ կը գործեն այն ծնողները, որոնք մէկ երկու տարին անգամ մը և կամ նոյն իսկ ամեն տարի Ամառնային Արձակուրդին իրենց քով տանելով իրենց զաւակները՝ ոչ միայն կենթարկեն կարգ մը անպատեհութեանց և կամ ճանապարհորդութեան բազմաթիւ նեղութեանց, այլ նաեւ կը զրկեն շատ մը ուսումնական օգուտներէ, զորս Արձակուրդի առեն իրենց ուսուցչաց քով մնացող աշակերտք՝ իր տեսակին մէջ աննման և գերազանցապէս առողջարար օդափոխութեան մը միջոցին այնչափ հաճելի եղանակաւ ձեռք կը բերեն։

---

Գրադարանը եւ Ուսումնական միջոցները, ինչպէս կը տեսնուի Պատ. Հոգաբարձութեան Տնտեսական Տեղեկագրէն, այս տարի եւս բաւական մեծ ծախքով յաւելումներ ունեցան։ Ստացուած գրքերուն ու հանդէսներուն մէջ ամենէն մեծ տեղը կը բռնէին մանկավարժական գիտութեան վերաբերեալ Գերմաներէն լեզուով հրատարակութիւնք։

Գրադարանապետութեան պաշտօնը կը վարէր ընթացս սրտ-Օգնական Ուսուցիչներէն Յ. Թիւթիւնճեան։

---

**Վարչական մարմինը**, *որոյ մասին յիշուած էր Նախորդ Տեղեկագրին մէջ, տարուանս մէջ ամբողջապէս կազմակերպուեցաւ այն Կանոնագրին զօրութեամբ, որ, ինչպէս յայտնի է, Լուսահոգի Բարբարի Կուսակին տրամադրութեանց համաձայն Վ.սեմ. Կուսակատարին կողմէ պատրաստուած և Ազգ. Կեդրոնական Վարչութեան կողմէ վաւերացուած է։*

**Առաջին Վարիչ մարմինը**, *այն է Կ. Պոլսոյ Խնամակալութիւնը Հարդէն անցեալ տարի կազմուած էր Ս. Պատրիարք Հօր նախագահութեան ներքև վեց ականաւոր ազգայիններէ, և նոյն տարուան վերջերը սկսած էր գործադրութեան դնել Վարժարանիս Կանոնագիրը։*

*Տարուանս սկիզբները կազմուեցաւ և. Սրբազան Պատրիարք Հօր օրհնածիր կոնդակով հաստատուեցաւ* **Երկրորդ Վարիչ մարմինը**, *այն է Տեղական Հոգաբարձութիւնը։ Այն տեղայի վեց պատուաւոր ազգայինք, որոնք, ինչպէս յայտնի է Նախորդ Տեղեկագրէն, վիճակիս Պատրիարքական Փոխանորդ Սրբազան Հօր և Վարժարանիս Տեսչութեան կողմէ նոյն մարմնի անդամակցութեան համար իբրև ընտրելի ներկայացուած էին, ընդունուեցան Պատուարժան Խնամակալութեան կողմէ, և իրենցմէ 3 ը, այն է՝*

*Տեարք*

*Խարաճեան Դանիէլ*
*Համամճեան Յակոբ*
*Տէր Ազարեան Կարապետ*

*նշանակուեցան իբրև բուն անդամներ, իսկ միւս 3 ը, այն է՝*

*Տեարք*

*Խէրպէկեան Զաքար*
*Գայթանճեան Մկրտիչ*
*Տիգրանեան Յակոբ*

*իբրև փոխանորդ անդամներ։ Ինչպէս յայտնի է, Կանոնագրի տրամադրութեան համաձայն՝ Հոգաբարձութեան կը նախագահէ Վիճակիս Պատրիարքական Փոխանորդ Սրբազան Հայրը, և նոյն մարմնին ցկեանս անդամ են նաև 3 Սան-Տեսուչք։*

Անդրանիկ Հոգաբարձութիւնը 1892 Դեկտեմբեր 15ին ըրաւ իր Առաջին նիստը, և ամբողջ ուսումնական տարուան մէջ ընդ ամենը ունեցաւ 15 նիստ, որոնց մէջ ամենայն եռանդեամբ ջանաց շատ մը գործեր տնօրինելու և խնդիրներ կարգադրելու՝ համաձայն Կանոնագրի տրամադրութիւններուն, ինչպէս նաև այն պաշտօնագրերուն, զորս ատեն ատեն կ՚ստանար Պատ. Խնամակալութենէն։ Հոգաբարձութիւնը ի միջի այլոց յատուկ ուշադրութիւն ընծայեց աշակերտաց սնունդին բարւոքման, և իր անդամք կարգաւ շաբաթական հերթապահ նշանակելով՝ ընկերակցութեամբ հերթապահ-Տեսչին և՝ շատ անգամ նաև Ս. Նախագահին, առհասարակ ճաշին և ընթրիքին, երբեմն ալ տարբեր ժամանակներու մէջ, կայցելէին ի միջի այլոց Խոհանոցն ու Սեղանատունը և ի գործ կը դնէին հարկ եղած հսկողութիւնը։

Հոգաբարձութեան **Գանձապետն** էր Յ. Համամճեան էֆէնտի, որ անդամներուն միաձայն հաւանութեամբը ընտրուած էր այդ պաշտօնին։

**Քարտուղարի** պաշտօնը կը կատարէր Մ. Զուխաճեան, իսկ **Հաշուապահին**՝ Մ. Քէնտիկեան էֆէնտիները։

**Մատակարարն** էր, ինչպէս ասկէ առաջ Օգնական-Ուսուցիչներէն Տ. Բրուտեան, որ միանգամայն Հիւանդանոցի հսկողն ու սովորական դեղերը պատրաստողն էր, իսկ **Մատակարարի Օգնականը**՝ ընթացաւարտ Օգնական-Ուսուցիչներէն Գ. Դօլինեան։

---

**Երրորդ վարիչ մարմինը**, այն է Վերատեսչութիւնը, կը կազմէին, ինչպէս ցարդ, 3 Սան-Ուսուցիչք այն կարգադրութեանց համաձայն, զորս Կաթողիկոսարանը իր 1891 Յունվար 31 թուական երկու Պաշտօնագրերով ըրած է նոցա պաշտօնավարութեան եղանակին ու պայմաններուն մասին։ Այդ պաշտօնագրով, որոց պատճէնները Պատ. Խնամակալութեան կողմէ պաշտօնապէս ուղարկուած են Հոգաբարձութեան, 3 Տեսչաց հաւաքական պատասխանատուութեան ներքև կը թողուի Վարժարանի Տեսչութիւնը և հետևեալ կերպիւ կ՚որոշուին նոցա մասնաւոր և ընդհանուր պարտականութիւնները։

1. Յ. **Մասաքեան**, *ա) կը ներկայացնէ Վերատեսուչը կառավարական, պաշտօնական և արտաքին յարաբերութեանց մէջ, բ) կստանձնէ Վարժարանի ընդհանուր գոյից և ի մասնաւորի Թանգարանի հսկողութիւնն ու բարեկարգ պահպանութիւնը և գ) հոգ կը տանի Վարժարանի Արհեստանոցներու բարւոք ընթացից ու արդիւնաւորման ։*

2. Ս. **Մողիկեան**, *ա) կը ներկայացնէ Վերատեսուչը Ուսուցչական Մանաժողովի մէջ եւ կստանձնէ անոր հետ կապուած պարտաւորութիւնները, բ) կը վարէ Վարժարանի Օրագրութիւնը, գ) կը կատարէ աշակերտաց ծնողներուն հետ հարկ եղած թղթակցութիւնը և դ) կը հսկէ գրադարանի բարեկարգ պահպանութեան վրայ ։*

3. Գ. **Աքուլեան** *ա) կը ներկայացնէ Վերատեսուչը Հոգաբարձութեան Խորհուրդին մէջ և կստանձնէ անոր հետ կապուած բոլոր պարտաւորութիւնները, պաշտօնական գործողութիւնները և թղթերու ստորագրութիւնը, և բ) կը կատարէ Վարժարանի դրամական ու հաշուական հսկողութիւնը և հաշիւներու ճշդութիւնն ու վաւերացումը ։ Առանց նորա վաւերացման որ և է վճարումնք չլինիր ։ Նա հարկ եղած դրամը կստանայ Գանձապետէն և կը յանձնէ Մատակարարին ։*

*Երբ երեքէն մին բացակայ լինի՝ միւսները կստանձնեն նորա պարտաւորութիւնները ։*

*Բացի այս մասնաւոր պարտաւորութիւններէն, որոց համար սակայն երեքն եւս հաւասարապէս պատասխանատու են, երեքին հաւաքական պարտաւորութիւնն է հոգ տանիլ Վարժարանի ընդհանուր նիւթական, ուսումնական և բարոյական բարելաւութեան, հսկել Վարժարանի օրինաց անթերի գործադրութեան և ուսուցչաց ու այլ պաշտօնէից պաշտօնավարութեան վրայ են ։*

---

**Չորրորդ Վարիչ մարմինը**, *այն է Ուսուցչական Մանաժողովը կազմուեցաւ ըստ Կանոնագրի երեք բարձրագոյն դասարաններու*

լեզուաց և գիտութեանց հայագէտ և հայադաւան Ուսուցիչներէն, որոնք էին,

Արուեան Գէորգ
Մասաթեան Յովսէփ
Սողիկեան Սարգիս
Ումիկեան Դաւիթ
Թիւթիւնճեան Յարութիւն
Տիրատուրեան Յարութիւն

Տեսչութեան անդամ Ս. Սողիկեան, ըստ Կանոնագրի, Մասնաժողովի Ատենապետն էր։ Քարտուղարութեան պաշտօնը կը կատարէր Յ. Տիրատուրեան։

Մասնաժողովի նիստերուն, Կանոնագրի տրամադրութեան համաձայն, քանիցս խորհրդական ձայնով մասնակցեցան նաև միւս բոլոր ուսուցիչք։ Ժողովի բոլոր խորհրդակցութիւններն ու որոշումները Քարտուղարի կողմէ կարձանագրուէին յատուկ մատեանի մէջ և ամեն անգամ կը վաւերացուէին անդամներուն ստորագրութեամբ։

Մասնաժողովը՝ որ կրցաւ կազմուիլ այն ատեն, երբ արդէն անցած էին ուսումնական տարուան առաջին 5 ամիսները, տարուան ընթացքին մէջ ընդ ամենը 11 անգամ գումարուեցաւ։ Խորհրդակցութեանց գլխաւոր առարկայներն էին հետեւեալները.

Յունուար 30 ին՝ Ընթերցումն Կանոնագրի այն հատուածին, որ կը վերաբերի Ուսուցչական Մասնաժողովին. Ընտրութիւն Քարտուղարի. կրկնիչներուն կողմէ յետամնաց աշակերտներուն յատուկ ուշադրութիւն ընծայուելու պէտքը, աշակերտաց կարգապահութիւն. Ա. կիսամեակի քննութեանց վերաբերեալ կարգադրութիւնք։ Փետրուար 16 ին՝ յանցապարտ աշակերտաց պատժի տնօրինութիւնք. աշակերտաց կարգապահութիւն։ Մարտ 22 ին՝ Զատկի Արձակուրդին վերաբերեալ կարգադրութիւնք. դպրոցական խաղեր. դպրոցական շրջագայութիւնք։ Ապրիլ 17 ին՝ Ա. կիսամեակի միջոցին աշակերտաց ցոյց տուած վարքի, ջանքի և արդիւնքի նիշերուն պատրաստութիւն։ Ապրիլ 19 ին՝ աշակերտաց Ա. կիսամեակի վկայականներուն վերջնական ձեւակերպութիւն. 91-92 ուսումնական տարուան համար Մասնա-

ժողովի Ատենապետէն պատրաստուած Տեղեկագրին ընթերցում։ Մա-յիս 22 ին՝ 93-94 ուսումնական տարուան Յայտագիր։ Մայիս 28ին հրաժարական Գաղղիերէնի ուսուցիչ Ռ. Լիգուրեօի, որ Հանրային Պարտուց Վարչութեան մէջ պաշտօն ստացած լինելով պարտաւորեալ էր տարեկան քննութիւններէն առաջ, Յունիս ամսի սկիզբները, մեկ-նիլ իւր պաշտօնատեղին՝ Պաղտատ։ Մայիս 31 ին՝ Տարեկան քըն-նութեանց վերաբերեալ կարգադրութիւնք. ամավերջի շրջագայու-թիւն ի Ս. Լուսաւորիչ. Բ. կիսամեկի մէջ աշակերտաց ցոյց տուած վարքի նիշերուն պատրաստութիւն։ Յունիս 14 ին՝ Ամառնային ար-ձակուրդի առթիւ հայրենիք գնացող աշակերտաց ճանապարհորդու-թեան վերաբերեալ տնօրինութիւնք։ Յունիս 21 ին չարունակու-թիւն աշակերտաց վարքի նիշերուն պատրաստութեան։ Յուլիս 5 ին՝ աշակերտաց Բ. կիսամեկի վկայականներուն պատրաստութիւն։

---

Երբ տեղեկագիրս կը վերջացնենք Վարչական մարմիններու կազմակերպութեան ուրախառիթ տեղեկութիւններով, և այսպէս հրաժեշտ կառնենք Վարժարանի գոյութեան երկոտասաներորդ տա-րիէն, կրնանք ըսել թէ այդ տարին մէկ երկու ծանր ձախորդու-թեանց հետ, որոնք յառաջ եկան տիրող համաճարակին երեսէն, մեծ յաջողութիւն ալ բերաւ Վարժարանին՝ գործադրութեամբ հա-սուն խորհրդածութեան արդիւնք եղող Կանոնագրի մը, որ անզու-գական Բարերարի այս սիրեցեալ Դաստակերտը կը դնէ անսասան հիմերու վրայ և կերաշխաւորէ անոր յարատեւութիւնն ու կանոնա-ւոր զարգացումը։

Այսպէս ուրեմն Վարժարանս՝ իւր վարչական հաստատուն կազմակերպութեամբ, ինչպէս նաեւ իւր ուսումնական միջոցներովն, իւր Ուսուցչական խմբով, որու այս տարուան հրաժարող կամ պակ-սող անդամներուն տեղերը արդէն լցուած են նոր անձինքներով, կը գտնուի այնպիսի պայմաններու մէջ, որոնք արժանի կը կացուցա-նեն զինք ամենուն գնահատման ու կատարեալ վստահութեան։ Ուստի չենք տարակուսիր թէ ուսումնասէր ծնողներն ու խնամա-կալներն այսուհետեւ եւս առանց վարանելու առիթ պիտի տան իրենց

*զաւակներուն՝ օժտուելու սրտի, մտքի եւ մարմնի այն ներդաշնակ կրթութեամբ, որ կը մատակարարուի այս Վարժարանին մէջ, ու մասնաւոր գուրգուրանաց առարկայ պիտի ընեն զայն, որպէսզի երթալով կատարելագործուի և կարող լինի միշտ իմացական, բարոյական և արհեստական կրթութեամբ օժտեալ պարկեշտ անհատներ հասցընել երկրին։*

Անդամ Տեսչութեան

***ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ***

**ՍԱՐԳԻՍ ՍՈՂԻԿԵԱՆ**

Կարին, Ուսումնական տարուան

[illegible] սկիզբը:



# ԱՇԱԿԵՐՏՔ 1892—1893 ՈՒՍՈՒՄՆ. ՏԱՐՈՒԱՆ

## ԱՌԱՋԻՆ ԴԱՍԱՐԱՆ

### Ա. Թոշակաւորք

1. *Պէրպէրեան Կարապետ, Արաբկիր*
2. *Պօղոյեան Նազարէթ, Կարին*
3. *Ջէքեան Տիգրան, Եօզղատ*
4. *Թիւթէլեան Միհրան, Մալաթիա*
5. *Թօփալեան Արտաշէս, Կ. Պոլիս*
6. *Թօփալեան Տիգրան,* »
7 *Խէրպէկեան Բագրատ Կարին;*
8. *Ծատուրեան Վաղարշակ, Բաբերդ*
9. *Կարապետեան Նշան, Սեբաստիա*
10. *Կափլանեան Միքայէլ, Եօզկատ*
11. *Հանէսեան Արմենակ, Կարին*
12. *Հանէսեան Բիւզանդ,* »
13. *Հէյրանեան Արմենակ, Տիվրիկ*
14. *Ղուկասեան Հրաչեայ, Շապին Գարահիսար*
15. *Ներսէսեան Գարեգին, Բաբերդ*
16. *Ջննողեան Արսէն, Կեսարիա*
17. *Ջննոզեան Գէորգ, Էնկիւրիւ*
18. *Պալասանեան Պարոյր, Կարին*
19. *Տէր Գրիգորեան Խոսրով, Ակն*
20. *Սիւզմէճեան Յովհաննէս, Եւդոկիա*

### Բ. Ձրիավարժք

21. *Թօքաճեան Թադէոս, Կարին*
22. *Կիւրոյեան Արմենակ, Բաբերդ*
23. *Մէզպուրեան Յովհաննէս, Կ. Պոլիս*
24. *Նահապետեան Սրապիոն, Կարին*

25. Պօղոսեան Համազասպ, Ալաշկերտ
26. Սիրքէլեան Արամ, Տիգրանակերտ
27. Փասպանեան Լեւոն, Եւդոկիա

## ՉՈՐՐՈՐԴ ԴԱՍԱՐԱՆ

### Ա. Թոշակաւորք

1. Աճէմեան Աբրահամ, Արապկիր
2. Այշարունի . Երուանդ, Կ. Պոլիս
3. Պալլարեան Արամ, Կարին .
4. Պաքալեան Եղիա, Սեբաստիա
5. Կիւլպէնկեան Գառնիկ, Կեսարիա
6. Դանիէլեան Հայկ, Երիզա
7. Թէլլալեան Յովհաննէս, Կեսարիա
8. Թօքատլեան Երուանդ, Սամսոն
9. Խէրպէկեան Մարտիրոս, Կարին
10. Գոչունեան Տիգրան, Կարին
11. Գույումճեան Նշան, Խարբերդ
12. Միսաքեան Հրանդ, »
13. Մուրատեան Արտաշէս, Սամսոն
14. Մուրատեան Վահան, »
15. Մարեան Արմենակ, »
16. Յակոբեան Արտաշէս, Եօզղատ
17. Շահինեան Արամ, Կարին
18. Շահինեան Մկրտիչ, Սեբաստիա
19. Պարսամեան Գրիգոր, Զարշամպա
20. Սահաթճեան Մկրտիչ, Կարին
21. Քէշիշեան Յակոբ, Մարզուան

### Բ. Ձրիավարժք

22. Եկաւեան Բարթող, Արաբկիր
23. Ջրաղացպանեան Եղիշէ, Վան

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՍԱՐԱՆ

### Ա. Թոշակաւորք

1. Արագիլեան Ստեփան, Սեբաստիա
2. Դրմիեան Պետրոս, Կարին
3. Ջաքարեան Վահրամ, »
4. Լէփեան Ռուբէն, Երիզա
5. Խոշեան Միսաք, Տրապիզոն
6. Գույումճեան Ղուկաս, Խարբերդ
7. Մանուկեան Վահան, Էնկիւրիւ
8. Շահինեան Վահան, Կարին
9. Ձիրքինեան Խոսրով, Արաբկիր
10. Սիւրմէնեան Գիսակ, Երիզա

### Բ. Ձրիավարժք

11. Պագիրկեանեան Մկրտիչ, Կարին
12. Պալակեան Գրիգոր, Եւդոկիա
13. Կիւլպէնկեան Մկրտիչ, Կարին
14. Տէր Սահակեան Մարտիրոս, Սամսոն

## ՎԵՑԵՐՈՐԴ ԴԱՍԱՐԱՆ

### Ա. Թոշակաւորք

1. Պաքալեան Սեդրոս, Սեբաստիա
2. Դանիէլեան Դերենիկ, Երիզա
3. Թաթիկեան Արամ, »
4. Խոշեան Մանուկ, Տրապիզոն
5. Համէսեան Վահան, Կարին
6. Հէյրանեան Գէորգ, Տիվրիկ
7. Հէյրանեան Թորոս, »
8. Ճանճիկեան Սարգիս, Արաբկիր
9. Միսաքեան Յարութիւն, Խարբերդ
10. Նաճարեան Վահան, Կարին
11. Պօտոսեան Ռուբէն, Շապին Գարահիսար

# Դասացոյց 1892–93 (Ձմեռն)

| | ԵՐԿՈՒՇԱԲԹԻ | | | | ԵՐԵՔՇԱԲԹԻ | | | | ՉՈՐԵՔՇԱԲԹԻ | | | | ՀԻՆԳՇԱԲԹԻ | | | | ՈՒՐԲԱԹ | | | | ՇԱԲԱԹ | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | I | IV | V | V | I | IV | V | VI | I | IV | V | VI | I | IV | V | VI | I | IV | V | VI | I | IV | V | VI |
| 8–9 | Հա | Ա | Բբ | Կր | Կր | Գհ | Կ | Տբ | Հգ | Պ | Տբ | Հա | Կր | Թ | Կր | Գմ | Հա | Հա | Ա | Կ | Հգ | Պ | Կր | Տբ |
| 9–10 | Թ | Կր | Պ | Բբ | Պ | Գմ | Գմ | Պ | Տ | Կ | Բ | Ա | Գ | Ա | Գմ | Բ | Պ | Կ | Բբ | Պ | Կ | Գմ | Գմ | Ա |
| 10–11 | Ա | Թ | Գ | Գմ | Գ | Հա | Ա | Գմ | Հա | Եչ | Ե | Ե | Տ | Գմ | Պ | Թ | Բ | Գհ | Գ | Բբ | Թ | Եչ | Տբ | Տ |
| 11–12 | Տ | Ե | Թ | Ե | Գծ | Բ | Գհ | Գ | Գր | Ե | Եչ | Գ | Հա | Տ | Գ | Ե | Ա | Գ | Գծ | Հգ | Տ | Հգ | Եչ | Գ |
| 2–3 | Գր | Գծ | Տ | Հա | Բ | Գ | Տ | Հգ | Մ | Տ | Հգ | Գ | Գծ | Հգ | Տ | Գհ | Թ | Գ | Գծ | Հգ | — | — | — | — |
| 3–4 | Ե | Տ | Հգ | Գհ | Գ | Տ | Հա | Եչ | Թ | Գ | Տ | — | Ե | Գ | Հա | Տ | Գ | Բ | Հգ | Եչ | — | — | — | — |
| 4–5 | Մ | Հգ | — | Տ | — | — | Գ | Տ | — | Մ | Մ | Տ | — | Գչ | Գչ | Գ | — | — | — | — | — | — | — | — |
| 6–7 | — | Գչ | Գչ | Դ | Դ | — | — | Ջ | Ջ | — | — | — | — | — | — | — | Դ | — | — | Ջ | Ջ | — | — | — |
| | ԿՀ | ԿՀ | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | ԿՀ | ԿՀ | — | — |
| 7–8 | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | ԿՀ | ԿՀ | — | — | ԿՀ | ԿՀ |

Ծանօթութիւն. | Կր = Կրօն, Եկ = Եկեղեց. պատմութիւն, Պ = Պատմութիւն, Ա = Աշխարհագրութիւն, Բ = Բնագիտութիւն, Տ = Տարրաբանութիւն, Բբ = Բնաբանութիւն, Հա = Հայերէն աշխարհաբար, Հգ = Հայերէն գրաբար, Տ = Տաճկերէն, Գ = Գաղղիերէն, Գմ = Գերմաներէն, Թ = Թուաբանութիւն, Գհ = Գրահաշիւ, Եչ = Երկրաչափութիւն, Ե = Երգ, Գչ = Գեղագրութիւն, Գծ = Գծագրութիւն, Մ = Մարմնամարզ, Դ = Դաշնակ, Ջ = Ջութակ, ԿՀ = Կազմարարութիւն—Հիւսնութիւն :

# ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

## Տնտեսական Տեղեկագիր

### 1892–1893 ՏԱՐԻՈՑ

ՄԱՏՈՒՑԵԱԼ

ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԱՆԷ ԱՌ ՊԱՏ. ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԻՒՆՆ

*Վարժարանիս այս տարւոյ նիւթական վիճակն, որ պատկերացած է Տեղեկագրոյս կից համեմատական ցուցակներով, կրնանք մխիթարական համարել, վասն զի ի նկատի առնլով անակնկալ համաճարակն, որ բազմաթիւ հին ու նոր աշակերտաց Վարժարանս գալուն արգելք դարձաւ, և միանգամայն սղութիւնն, որ այնչափ ծանր կշռեց Վարժարանիս Արկեղ վրայ, այսօր ո՛չ միայն Պիւտճէով ենթագրուած 216 ոսկւոյ պարտքը գոյացած չէ, այլ և 1892—93 տարին 2138 ½ ղրուշի կանխիկ դրամ կը յանձնէ յաջորդ տարւոյն, հանդերձ զանազան առնելիքներով։ Պէտք է սակայն խոստովանիլ որ տնտեսագիտական միջոցները չեն միայն որ այս յաջող արդիւնքը տուած են, այլ ինչ ինչ մասնաւոր պարագայներ, զորս պիտի բացատրեմք իրենց տեղը։*

*Անցնինք հարկ եղած ծանօթութիւնները տալ համեմատական ցուցակներու մտից և ելից այն գլուխներու մասին, որք բացատրութեան կարօտ կը սեպուին։*

### ՄՈՒՏՔ

*Մտից առաջին գլուխը գիտողութեան արժանի բան մը չը պարունակեր։*

Երկրորդ գլխոյն Ա. մասին մէջ իբրև վաճառելի ցորենի արժէք նախատեսուած 12,875 ղրուշի փոխարէն 29,466 ½ ղրուշի մուտք գոյանալը հետեւանք է արմտեաց առատութեան և ենթադրուած 30 տոմարէն աւելի ցորեան ծախուած ըլլալուն: Սակայն պէտք է գիտնալ որ Վարժարանը վաճառած այդ ցորենին փոխարէնը չէ կրցած առանալ և հետեւաբար մնացած է առանց պահեստի արմտեաց՝ հակառակ իւր սովորութեան, և այս է ենթադրեալ բացին փակման պատճառներէն մին: Իսկ նոյն գլխոյ երկրորդ մասին մէջ աշակերտաց արձակուրդի համար 10 ոսկւոյ փոխարէն 20 ոսկւոյ մուտք գոյանալուն պատճառն է արձակուրդի ժամանակ նախատեսուածին ճիշդ կրկնապատիկ թուով աշակերտ մնալը: Յայտնի է թէ հին աշակերտք արձակուրդի այս տուրքէն ազատ են:

Երրորդ, Չորրորդ, Հինգերորդ, Վեցերորդ, Եօթներորդ եւ Ութերորդ Գլուխները ոչ ենթադրական և ոչ ալ իրական մուտք ունեցեր են: Իններորդ գլուխը դիտողութեան կարօտ բան մը չունի:

Տասներորդ գլխոյն մուտքն նախատեսուածէն շատ աւելի անցի ունեցեր է, որովհետև Վարժարանն ապրող պաշտօնէից ոմանց հացը Վարժարանին նորակառոյց փուռին մէջ սկսեր է պատրաստուիլ վճարմամբ, և միանգամայն շատ հացի փշրանք և ալիւրի թեփ ծախուեր է:

Մետասաներորդ գլխոյն մէջ ենթադրուածէն նուազ մուտք գոյանալուն պատճառն այն է որ ցնցոտիք չեն ծախուիր որք սակայն պիտի վաճառուին և անոնցն ի հաշիւ յաջորդ 1893—1894 տարւոյ:

Երկոտասաներորդ գլուխը ո՛ և է մուտք չպարունակեր:

Երեքտասաներորդ գլխոյն մէջ առանց նախատեսելու մուտք ունենալու, 176 ¼ ղրուշի իրական հասոյթ մը կը տեսնուի, որ գոյացած է Վարժարանիս դեղարանէն պաշտօնէից վաճառելու դեղերու արժէքէն: Չորեքտասաներորդ գլուխը մուտք չունի:

Հնգետասաներորդ գլխոյն մէջ ենթադրական մուտք չկայ, այլ իրական 100 ½ ղրուշի մուտք մը կը տեսնուի, որ գոյացած է քարիւղի վաճառելու թիթեղներու գնէն: Վեշտասաներորդ և Եօթնետասներորդ գլուխները ո՛ և է մուտք չունին:

Ութևտասներորդ գլխոյն առաջին մասին ենթադրական եւ իրական գումարները իրարու կը համապատասխանեն, իսկ երկրորդ

մասին մէջ 9,270 դրուշ ենթադրական գումարին տեղ 7,725 դրուշ լինելուն պատճառն այն է որ երկու աշակերտք տակաւին չեն վճարած իրենց Ջութակի տուրքերն, և ենթադրուածներէն մէկ աշակերտ ալ Ջութակի դասի չէ հետեւեր ։

Ինն և տասներորդ գլխոյն մէջ մէկ ոսկի ենթադրական մուտք կը տեսնուի, մինչդեռ իրական հասոյթ չկայ. պատճառն այն է որ Կազմարանին առիթ չէ ներկայացեր դուրսի յանձնարարութեամբ ևս զբաղելու վճարքով. սակայն Կազմարանը պարապ չէ մնացեր և Վարժարանիս Գրադարանին վերաբերեալ բազմաթիւ գրքեր և դասագրքեր նորոգեր և կազմեր է ։

Քսաներորդ գլխոյն առաջին մասին մէջ ենթադրուած մուտքը նուազ կերեւի իրականէն ճիշդ մէկ աշակերտի վճարքի տարբերութեամբ, սակայն աւելորդ չէ ըսել թէ իրական տարբերութիւնը այդ չէ, որովհետեւ Կողպարարութեան հետեւողք ոչ թէ մէկ այլ երեք աշակերտ աւելի եղած են ենթադրուածէն, սակայն անոնցմէ մին իր տուրքը վճարած է, և միւսները տակաւին անվճար թողուցած են իրենց պարտքը ։ Իսկ նոյն գլխոյ երկրորդ մասին մէջ ենթադրական և իրական գումարներն թէպէտ կը համապատասխանեն իրարու, սակայն զանց չեմք ըներ յայտնել թէ ենթադրուածէն երկու աշակերտ աւելի հետեւած են հիւսնութեան, որք սակայն տակաւին չեն հատուցած իրենց պարտքը ։ Գալով երրորդ մասին մէջ ենթադրականէն շատ աւելի եղող իրական մտից, պատճառն այն է որ Արհեստանոցին մէջ ամեն ժամանակէ աւելի այժմ դուրսի յանձնարարութեանց գոհացում կը տրուի ։

Քսան և մէկերորդ գլխոյն ենթադրական և իրական մուտքերն այնչափ աննշան տարբերութիւն մ'ունին, որ բացատրութեան չը կարօտիր ։

Քսան և երկրորդ գլխոյն առաջին մասին մէջ նախատեսուած և իրապէս եղած մուտքերուն տարբերութիւնը յառաջ կուգայ ենթադրուած աշակերտաց թուոյն նուազումէն և միանգամայն աշակերտաց ոմանց թոշակին յարդ անվճար մնալէն ։ Այսօր տասը աշակերտ, որոց անուններն աստ յիշել աւելորդ է, մասնակի թէ՛ ամբողջ մէկ 117 լիրայ պարտք ունին Վարժարանիս, որմէ զեղչելով համաճարակի առթիւ ետ ճամբուած երկու աշակերտի վճարքն 3 լի-

րայ, կը մնայ 114 լիրայ զուտ թոշակի պահանջ, զոր 1892—93 տարին կը թողու յաջորդին։

Իսկ վերջին գլխոյն մէջ ենթադրուած 22,248 դրուշ գոյանալիք պարտուց փոխարէն 6259 3/4 դրուշ հին պահանջ կարելի է եղեր գանձել, որ յայտնի է թէ նախատեսուած այդ պարտուց ջնջման պատճառներէն մին եղած է։

## ԵԼՔ

Անցնելով այժմ Ելից գլուխներու քննութեան, կը տեսնենք որ Առաջին Գլուխը թէ՛ ենթադրական թէ՛ իրական ծախք մը չպարունակեր։ Իսկ Երկրորդ գլխոյն ենթադրական թէ՛ իրական ծախուց գումարները գրեթէ զիրար կը փակեն. Գլխաւոր տարբերութիւն մը օգափոխութեան ծախուց մէջ կը նշմարուի, որոյ նուազման պատճառն այն է որ Խրեզինայ և Ռամնէկայ փոխադրութիւնը, որ կարեւոր գումարը կը կազմէ այդ ծախուց մէջ, եզան սայլով տեղի ունեցեր է՝ փոխանակ ֆուրգօնի։

Երրորդ, Չորրորդ, Հինգերորդ, Վեցերորդ և Եօթներորդ գլուխներուն մէջ իրական ծախքերն ենթադրականներէն նուազ տեղի ունեցեր են, որ անշուշտ արդիւնք է խնայողական միջոցներու։

Ութերորդ գլխոյն մէջ տեսնուած տարբերութեան պատճառներն են. 1. Հայերէն լեզուի Ուսուցչին տարաժամ մահը, 2. Գաղղիերէն լեզուի Ուսուցչին Տարեշրջանէն մէկ ամիս կանուխ հեռանալով՝ արձակուրդի ամիսներուն թոշակ չստանալը, 3. Տաճկերէն լեզուի Ուսուցչին ևս արձակուրդի ամսաթոշակ չստանալը և 4. Հրաժարեալ երեք Օգնական-Ուսուցչաց արձակուրդի մէկ մէկ ամսաթոշակաց զեղչումը։

Իններորդ գլխոյն մէջ ևս խնայողութիւնն իր բաժինն ունեցեր է, որ սակայն աւելի կը տեսնուի Տասներորդ գլխոյն մէջ. վասն զի հակառակ պարենեաց խիստ սղութեան՝ ենթադրական եւ իրական ընդհանուր գումարներուն մէջ մեծ բաց մը չնշմարուիր, աշակերտաց կարելի եղածին չափ լաւ սնունդ տրուելով հանդերձ, մանաւանդ համաճարակի սպառնացող վտանգին առջև։ Աւելորդ չէ ըսել թէ

*այս Գլխոյն ենթադրական և իրական մանրամասն գումարներուն մէջ երբեմն երեւցող մեծ տարբերութիւնն հետեւանք է համաճարակին աղէտիւ ուսերկայ մէջ կատարուած ընտրութեան։*

*Մետասաներորդ գլխոյն նախատեսեալ ծախուց վերջինը շատ նուազ կը տեսնուի քան իրական ծախքը, որովհետեւ պիւտճէի պատրաստութեան պահուն փոխանակ երկերկու զոյգ կօշիկի՝ մէկ մէկ զոյգ կօշիկ ի հաշիւ առնուած էր։*

*Երկոտասաներորդ, Երեքտասաներորդ, Չորեքտասաներորդ, Հնգետասաներորդ, Վեշտասաներորդ, Եօթն և տասներորդ, Ութ և տասներորդ և Ինն և տասներորդ գլուխներուն մէջ նշանակուած գումարներուն բացատրութեան կարօտ չեն թուիր, միայն աւելորդ չլինիր յայտնել թէ վառելիքի և լոյսի գլուխներուն մէջ տեսնուած տարբերութիւնը այդ նիւթերուն երբեմն աժան և երբեմն սուղ լինելուն պատճառաւ է։*

*Քսաներորդ գլխոյն մէջ տեսնուած ենթադրական և իրական ընդհանուր գումարները գրեթէ զիրար կը լնուն։ Հարկ է սակայն յայտնել թէ երկու արհեստապետաց համար նշանակուած թոշակի ենթադրականին և իրականին մէջ եղած տարբերութիւնն այն է որ այդ թոշակին վրայ աւելցուած են այն շահաբաժինները (զուտ շահին 25 %), զորս կ'առնան նոքա դուրսէն լինելիք յանձնարարութեան մը վճարքին համեմատութեամբ, և որոյ մէջ մեծագոյն բաժինն ունի Վարժարանը (50 %) և փոքր բաժին մ'ալ ձրիավարժ արհեստաւոր աշակերտք (25 %)։*

*Քսան և մէկերորդ գլխոյն մէջ գտնուած գումարներն ևս բացատրութեան կարօտ չեն, միայն հարկ է յաւելուլ թէ Պետական Տուրքի գումարին տակ նշանակուած է խոտի տասանորդի տուրքն ևս, և այս է տարբերութեան պատճառը։*

*Ի տեղեկութիւն պէտք է աւելցնել նաև թէ Քսան և երրորդ գլխոյն մէջ տեսնուած 2147 ½ ղրուշէն 9 ղրուշ միայն աշակերտի մը անցաթուղթին համար ծախսուած է, որով կը մնայ 2138 ½ ղրուշ իբրեւ պատրաստ դրամ։*

*Այսպէս ուրեմն 1892—93 տարւոյ մէջ Վարժարանս փոխանակ նախատեսեալ 308,176 ղրուշի՝ ունեցած է մուտք 322,941 ½ ղրշ.*

և հետևաբար երբ նախատեսեալ այդ մուտքով 22,248 ղրուշ պարտք պիտի գոյանար, իրական այդ մուտքովն յայտնի է թէ պիտի գոյանար 7482 ½ ղրուշ միայն, այլ որովհետև նախատեսեալ 330,424 ղրշ. ծախուց փոխանակ՝ իրական ծախք տեղի ունեցեր է 320,803 ղրուշ, հետևաբար 9621 ղրուշի չափ մը կը գոյանայ, յորմէ զեղչելով 7482 ½ ղրուշ պարտքն կը մնայ պատրաստ դրամ 2138 ½ ղրուշ, որ 1892—93 տարին յանձնած է յաջորդ 1893—94 տարւոյն։

Տեղեկագրոյս կից երրորդ տախտակը կը ցուցնէ իւրաքանչիւր ծախքէ մէն մի աշակերտի ինկած բաժինն։ Հարկ կը սեպեմք յաւելուլ թէ «Արհեստանոց» «Կալուածք» և «Արտակարգ» Գլուխներն չեն պատկանիր աշակերտաց ուղղակի ծախուց, ուստի եթէ զեղչեմք ծախուց այդ երեք գումարներն ընդհանուր գումարէն, իւրաքանչիւր աշակերտի ամբողջ և ուղղակի ծախուց բաժինը կը մնայ 3573, 70 ղուրուշ։

Ինչպէս յայտնի է Վարժարանիս բոլոր մուտքերն ու ծախքերը Օսմանեան ոսկին 103 ղրուշէն նշանակուած են։



# 1892-1893

# Համեմատական Ցուցակ

## ԵԼՄՏԱՑՈՅՑՈՎ ՆԱԽԱՏԵՍՈՒԱԾ ԵՒ ԻՐԱՊԷՍ ԵՂԱԾ

## ՄՏԻՑ

| | | | | ՆԱԽԱՏԵՍԵԱԼ ՄՈՒՏՔ | | | | ԻՐԱԿԱՆ ՄՈՒՏՔ | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Հոգելոյս Հիմնադիրն | | | 123600 | — | | | 123600 | — |
| 2 | Վարժարան | | | | | | | | |
| | Վաճառեալ ցորեան | 12875 | — | | | 29466 | 50 | | |
| | Աշակերտաց արձակուրդի տուրք | 1030 | — | 13905 | — | 2060 | — | 31526 | 50 |
| 3 | Ննջարան | | | | | | | | |
| 4 | Դասարան | | | | | | | | |
| 5 | Ճաշարան-խոհանոց | | | | | | | | |
| 6 | Կրօնական | | | | | | | | |
| 7 | Պաշտօնական | | | | | | | | |
| 8 | Թոշակք Ուսուցչաց | | | | | | | | |
| 9 | Վարձք Սպասաւորաց | | | | | | | | |
| | Վաճառեալ ծառայութ. | | | 618 | — | | | 618 | — |
| 10 | Ուտելիք-Ըմպելիք | | | | | | | | |
| | Վաճառեալ ուտեստ | | | 515 | — | | | 2267 | — |
| 11 | Զգեստ-Կօշիկք | | | | | | | | |
| | Վաճառեալ ներմակեղէն | | | 515 | — | | | 9 | 50 |
| 12 | Մաքրութիւն | | | | | | | | |
| 13 | Հիւանդանոց | | | | | | | | |
| | Վաճառեալ դեղօրայք | | | | | | | 176 | 25 |
| 14 | Վառելիք | | | | | | | | |
| 15 | Լոյս | | | | | | | | |
| | Վաճառեալ քարիւղի թիթեղներ | | | | | | | 100 | 50 |
| | *Փոխադրելի* | | | 139153 | — | | | 158297 | 75 |

| | | | | ՆԱԽԱՏԵՍԵԱԼ ՄՈՒՏՔ | | | | ԻՐԱԿԱՆ ՄՈՒՏՔ | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | *Փոխադրեալ* | | | 139153 | — | | | 158297 | 75 |
| 16 | Դրադարան | | | | | | | | |
| 17 | Թանգարան | | | | | | | | |
| 18 | Երաժշտարան | | | | | | | | |
| | Դաշնակահարք | 3605 | — | | | 3605 | — | | |
| | Ջութակահարք | 9270 | — | 12875 | — | 7725 | — | 11330 | — |
| 19 | Կազմարան | | | 103 | | | | | |
| 20 | Արհեստանոց | | | | | | | | |
| | Կօշկարար աշակերտք | 5150 | — | | | 5665 | — | | |
| | Հիւսն | 3605 | — | | | 3605 | — | | |
| | Վաճառեալք | 1030 | — | 9785 | — | 3282 | — | 12552 | — |
| 21 | Կալուածք | | | | | | | | |
| | Տարեկան հասոյթ | | | 15450 | — | | | 15434 | — |
| 22 | Աշակերտք | | | | | | | | |
| | Թոշակք | 129780 | — | | | 118038 | — | | |
| | Նորեկ աշակերտաց մուտք | 1030 | — | 130810 | — | 1030 | — | 119068 | — |
| 23 | Արտակարգ | | | | | | | | |
| | Հին պահանջ գանձեալ | | | 22248 | — | | | 6239 | 75 |
| | | | | 330424 | — | | | 322941 | 50 |



# 1892-1893

## Համեմատական Ցուցակ

### ԵԼՄՏԱՑՈՅՑՈՎ ՆԱԽԱՏԵՍՈՒԱԾ ԵՒ ԻՐԱՊԷՍ ԵՂԱԾ

### ԵԼԻՑ

| | | | | ՆԱԽԱՏԵՍԵԱԼ ԵԼՔ | | | | ԻՐԱԿԱՆ ԵԼՔ | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Հոգելոյս Հիմնադիր | | | | | | | | |
| 2 | Վարժարան | | | | | | | | |
| | Շէնքի վարձք | 10300 | — | | | 10300 | — | | |
| | Պահպանութիւն | 2575 | — | | | 3577 | — | | |
| | Կահաւորութիւն | 515 | — | | | 46 | — | | |
| | Օգափոխութիւն եւն. | 5150 | — | | | 4258 | 25 | | |
| | Շինութիւնք | 8240 | – | 26780 | — | 8285 | — | 26466 | 25 |
| 3 | Ննջարան | | | | | | | | |
| | Պահպանութիւն | 515 | — | | | | | | |
| | Կահաւորութիւն | 515 | — | 1030 | — | | | 511 | 25 |
| 4 | Դասարան | | | | | | | | |
| | Դպրոցական պիտոյք | 1236 | — | | | 914 | 75 | | |
| | Դասագիրք | 1030 | — | | | 1169 | — | | |
| | Կահաւորութիւն | 206 | — | 2472 | — | 10 | — | 2093 | 75 |
| 5 | Ճաշարան-խոհանոց | | | | | | | | |
| | Պահպանութիւն | 1030 | — | | | 729 | — | | |
| | Կահաւորութիւն | 515 | — | 1545 | — | 511 | 25 | 1240 | 25 |
| 6 | Կրօնական | | | | | | | | |
| | Այլ եւ այլք | | | 618 | — | | | 508 | 50 |
| 7 | Պաշտօնեական | | | | | | | | |
| | Հաշուապահ | 3708 | – | | | 3708 | – | | |
| | Տօմարք | 618 | — | | | 123 | 50 | | |
| | Թղթակցութիւն | 2472 | - | 6798 | — | 2462 | 75 | 6294 | 25 |
| | *Փոխադրելի* | | | 39243 | — | | | 37114 | 25 |

| | | | ՆԱԽԱՏԵՍԵԱԼ ԵԼՔ | | | | ԻՐԱԿԱՆ ԵԼՔ | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| *Փոխադրեալ* | | | 39243 | — | | | 37114 | 25 |
| 8 Թոշակք Ուսուցչաց | | | | | | | | |
| Յ. Մատաթեան | 22248 | — | | | 22248 | — | | |
| Ս. Սողիկեան | 19776 | — | | | 19776 | — | | |
| Գ. Աքուլեան | 19776 | — | | | 19776 | — | | |
| Դ. Ումիկեան | 11124 | — | | | 11124 | — | | |
| Ա. Խաչատուրեան եւ Կ. Մկրտիչեան | 12360 | — | | | 3090 | — | | |
| Ռ. Վիկուռեօ | 12360 | — | | | 9270 | — | | |
| Շիւքրի Մուհամմէտ էֆ. | 4120 | — | | | 3090 | — | | |
| Տ. Բրուտեան | 7416 | — | | | 7416 | — | | |
| Յ. Տիրատուրեան | 2472 | — | | | 2266 | — | | |
| Գ. Շէհլեմեան | 2472 | — | | | 2266 | — | | |
| Գ. Դոյխեան | 2472 | — | | | 2472 | — | | |
| Յ. Թիւթիւնճեան | 2472 | — | 119068 | — | 2266 | — | 105060 | — |
| 9 Վարձք Սպասաւորաց | | | | | | | | |
| Դռնապան | 618 | — | | | 648 | — | | |
| 2 Գիշերապահք | 1545 | — | | | 1215 | 50 | | |
| 2 Սեղանապետք | 1442 | — | | | 1371 | 25 | | |
| Լուացարար | 927 | — | | | 708 | — | | |
| Խոհարար | 1236 | — | | | 901 | 25 | | |
| » 2 օգնական | 1236 | — | | | 1383 | 75 | | |
| Արտաքնոցապահ | 618 | — | | | 618 | — | | |
| Պարտիզպան | 618 | — | | | 721 | — | | |
| Ուսուցչաց ծառայ | 618 | — | | | 618 | — | | |
| Այլ եւ այլք | 309 | — | 9167 | — | 120 | | 8304 | 75 |
| 10 Ուտելիք-Ըմպելիք | | | | | | | | |
| Ցորեան եւ ալիւր | 12875 | — | | | 24364 | — | | |
| Հաց-բուլ, փուռի ծախք եւն. | 3605 | — | | — | 1408 | 50 | | — |
| | 16480 | | 167478 | | 25772 | 50 | | |
| *Փոխադրելի* | | | | | | | 150479 | |

| | | | Նախատեսեալ ելք | | | | Իրական ելք | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| *Փոխադրեալ* | 16480 | | 167478 | — | 23772 | 50 | 150479 | — |
| Միս, հաւ, ձուկ | 18540 | — | | | 18475 | — | | |
| Բրինձ | 3150 | — | | | 3440 | 25 | | |
| Իւղ | 3150 | — | | | 3489 | 50 | | |
| Խմորեղէն | 1030 | — | | | 228 | – | | |
| Կաթնեղէն, պանրեղէն | 1545 | — | | | 2346 | – | | |
| Շաքար | 3150 | — | | | 3107 | 50 | | |
| Թէյ | 515 | — | | | 655 | – | | |
| Ձէթ | 309 | — | | | 403 | – | | |
| Մրգեղէն | 3090 | — | | | 1135 | 25 | | |
| Միրանի, չամիչ եւն. | 309 | — | | | 319 | 50 | | |
| Աղ եւ համեմունք | 1030 | — | | | 561 | 25 | | |
| Բանջարեղէն | 2060 | — | | | 1617 | 75 | | |
| Ընդեղէն | 412 | — | | | 198 | 25 | | |
| Գետնախնձոր | 824 | — | | | 860 | 75 | | |
| Կաղամբ, սոխ | 515 | — | | | 469 | 75 | | |
| Հաւկիթ | 721 | — | | | 601 | — | | |
| Հիւրասիրութիւն | 1030 | — | | | 353 | - | | |
| Գինի, քացախ | 618 | — | 64478 | — | 217 | — | 70250 | 25 |
| 11 Զգեստք-Կօշիկք | | | | | | | | |
| Զգեստացու կտոր | 9785 | — | | | 11035 | 50 | | |
| Ճերմկեղէն, ընկողնակ | 4635 | — | | | 1491 | 75 | | |
| Դերձակ եւ նորոգութ. | 4326 | — | | | 4911 | — | | |
| Ֆէս եւ ծոպ | 1133 | — | | | 816 | — | | |
| Գուլպայ | 618 | — | | | 685 | 75 | | |
| Երեսսրբիչ, թաշկինակ | 618 | — | | | 377 | 75 | | |
| Կօշիկք եւ նորոգութ. | 4635 | — | 25750 | | 9234 | 50 | 28752 | 25 |
| 12 Մաքրութիւն | | | | | | | | |
| Բաղնիք, սափրիչ, օճառ | 1648 | — | | | 1816 | 50 | | |
| Լուացք | 3150 | — | 6798 | — | 3373 | — | 7189 | 50 |
| *Փոխադրելի* | | | 264504 | | | | 256674 | |

| | | | | ՆԱԽԱՏԵՍԵԱԼ ԵԼՔ | | | | ԻՐԱԿԱՆ ԵԼՔ | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | *Փոխադրեալ* | | — | 264504 | — | | | 256671 | |
| 13 | Հիւանդանոց | | | | | | | | |
| | Այցելու բժիշկ | 3708 | — | | | 3708 | — | | |
| | Արտակարգ բժիշկ | 309 | — | | | 223 | 75 | | |
| | Հիւանդապահ | 927 | — | | | 689 | — | | |
| | Դեղօրայք | 1030 | — | 5974 | | 978 | 50 | 5599 | 25 |
| 14 | Վառելիք | | | | | | | | |
| | Փայտ, ածուխ, եւն. | 18540 | — | | | 19925 | 75 | | |
| | Այլ եւ այլք | 515 | — | 19055 | — | 564 | 50 | 20490 | 25 |
| 15 | Լոյս | | | | | | | | |
| | Քարիւղ, մոմ | 2575 | — | | | 3368 | 75 | | |
| | Լուցկի, ապակի | 515 | — | 3090 | | 257 | 50 | 3626 | 25 |
| 16 | Գրադարան | | | | | | | | |
| | Գրեանք | 1648 | — | | | 1625 | — | | |
| | Լրագիրք | 824 | — | 2472 | — | 858 | 50 | 2483 | 50 |
| 17 | Թանգարան | | | | | | | | |
| | Այլ եւ այլք | | | 309 | — | | | 20 | — |
| 18 | Երաժշտարան | | | | | | | | |
| | Այլ եւ այլք | | | 515 | - | | | 402 | 75 |
| 19 | Կազմարան | | | | | | | | |
| | Այլ եւ այլք | | | 515 | — | | | 176 | — |
| 20 | Արհեստանոց | | | | | | | | |
| | 2 Արհեստապետք | 14832 | — | | | 15320 | 25 | | |
| | Գործիք | 2060 | — | | | 1737 | 75 | | |
| | Երկաթ, ատաղձ | 2060 | — | | | 1390 | 25 | | |
| | Ածուխ, ներկ, զամ | 2060 | — | | | 1272 | 25 | | |
| | Այլ եւ այլք | 618 | — | 21630 | | 1903 | 50 | 21624 | — |
| | *Փոխադրելի* | | | 318064 | — | | | 311093 | |

| | | | | ՆԱԽԱՏԵՍԵԱԼ ԵԼՔ | | | | ԻՐԱԿԱՆ ԵԼՔ | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | *Փոխադրեալ* | | | 318064 | — | | | 311093 | |
| 21 | Կալուածք | | | | | | | | |
| | Սերմ | 7725 | — | | | 6518 | — | | |
| | Ագարակապետ | 1236 | — | | | 1236 | — | | |
| | Պետական տուրք | 1030 | — | | | 1285 | — | | |
| | Այլ եւ այլք | 309 | — | 10300 | — | 662 | — | 9701 | — |
| 22 | Աշակերտք | | | | | | | | |
| 23 | Արտակարգ | | | 2060 | — | | | 2147 | 50 |
| | | | | 330424 | — | | | 322941 | 50 |



# Համեմատական Ցուցակ

## ՄԻԱՄԵԱՑ ԾԱԽՈՒՑ ՄԷՆ ՄԻ ԱՇԱԿԵՐՏԻ ՀԱՄԱՐ

| | 1892-1893 | 81 ԱՇԱԿԵՐՏԻ ՀԱՄԱՐ | | 1 ԱՇԱԿԵՐՏԻ ՀԱՄԱՐ |
|---|---|---|---|---|
| 1 | Վարժարան | 26466 | 25 | 326,74 |
| 2 | Ննջարան | 511 | 25 | 6,31 |
| 3 | Դասարան | 2093 | 75 | 25,85 |
| 4 | Ճաշարան-Խոհանոց | 1240 | 25 | 15,31 |
| 5 | Կրօնական | 508 | 50 | 6,28 |
| 6 | Պաշտօնական | 6294 | 25 | 77,71 |
| 7 | Թոշակք Ուսուցչաց | 105060 | — | 1297,04 |
| 8 | Վարձք Սպասաւորաց | 8304 | 75 | 102,53 |
| 9 | Ուտելիք-Ըմպելիք | 70250 | 25 | 867,29 |
| 10 | Զգեստ-Կօշիկք | 28752 | 25 | 354,97 |
| 11 | Մաքրութիւն աշակերտաց | 7189 | 50 | 88,76 |
| 12 | Հիւանդանոց | 5599 | 25 | 69,13 |
| 13 | Վառելիք | 20490 | 25 | 252,96 |
| 14 | Լոյս | 3626 | 25 | 44,77 |
| 15 | Գրադարան | 2483 | 50 | 30,66 |
| 16 | Թանգարան | 20 | - | 0,25 |
| 17 | Երաժշտարան | 402 | 75 | 4,97 |
| 18 | Կաղմարան | 176 | — | 2,17 |
| 19 | Արհեստանոց | 21624 | — | 266,96 |
| 20 | Կալուածք | 9701 | — | 119,76 |
| 21 | Աշակերտք | — | | — |
| 22 | Արտակարգ | 2147 | 50 | 26,51 |
| | | 322941 | 50 | 3986,93 |

